

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Մայրը

Ես չգիտեի, որ թուխս դնելն էլ իր արարողությունն ունի: Առաջին անգամ տատս ինձ մասնակից արեց այդ արարողությանը: Երբ ձվերը շարված էին արկղում, վերջին ձուն ափս խոթեց ու պահանջեց, որ կրկնեմ իր բառերը. «Բոլորը ծակ, այս մեկը լակ»: Կրկնելիս սխալվեցի, հակառակն ասացի՝ «Բոլորը լակ, այս մեկը ծակ»: Վրդովված տատս մի կծու հայացք նետեց վրաս ու պահանջեց նորից կրկնել: Ես կըրկնեցի:

Հաշված օրերն անցան, բայց մեր թխսկանի տակ ձվերն ասես նոր էինք դրել՝ ոչ մի շարժ չկար: Տատս չհամբերեց, մեկ-մեկ թափահարեց ձվերը: Պարզվեց, որ տասնյոթ ձվերից միայն մեկի մեջ մի փոքրիկ շշուկ կար:

Մեր թխսկանը ունեցավ մի ճուտ, այն էլ, ինչպես տատս կասեր, օրապակաս: Թխսկանը իր միակ ճտով պապիս աչքի փուշն էր դարձել:

— Ի՞նչ ես այդ օրապակասի համար մեծ հավի ոտքը կապ դրել,— դիմեց նա տատիս:

— Ի՞նչ անեմ,— սրտնեղեց տատս:

— Աթարանոց նետիր:

— Չէ, չեմ կարող:

Պապս խոսքի տեր մարդ էր: Մի առավոտ, երբ արթնացանք, մինունար ճուտիկը չկար, իսկ մայր թխսկանը, ասես խռոված, քաշվել էր բակի մի կողմն ու կանգնել մի ոտքի: Կեսօրվա դեմ տատիս շաղ տված կուտին նա մոտ չեկավ: Աչք չէի թեքում թխսկանից: Պապս ինձ պատվիրեց հորթի հետևից գնալ հանդը: Բակից դուրս գալիս տեսա՝ մեր թխսկանը դեռ կանգնած է նույն դիրքով:

Երեկոյան, երբ պապիս հանձնարարությունը կատարած բակ մտա, քիչ էր մնում զարմանքից քար կտրեի: Բակի մեջտեղում կանգնած էր թխսկանը՝ մինունար ճուտիկը մեջքին: Փոքրիկը դողում էր, թվում էր, թե կընկնի, բայց մայրը կանգնել էր վստահ ու գոհ:

Տարիներ են անցել: Ամեն անգամ թխսկան տեսնելիս, հիշում եմ մեր թխսկանին ու մտածում մայրական սրտի մասին:



*ՍՈՒՍԱՆՆԱ ԽԱՉՅԱՆ*
*Լեռնային Ղարաբաղ, Հադրութի շրջան, գ. Էդիլլու, 6-րդ դասարան*



# Շունն ու ժամացույցը

Լինում է չի լինում, մի հավատարիմ շուն է լինում և մի հուսալի ժամացույց՝ զարթուցիչ: Մի անգամ շունն ու ժամացույցը սկսում են վիճել, թե իրենցից ո՞վ է տանտիրոջն ավելի հավատարիմ:

— Ես եմ ավելի հավատարիմ,— ասում է շունը:

— Չէ՛, ես եմ ավելի հավատարիմ,— ասում է ժամացույցը:

Վիճեցին մինչև երեկո: Գիշերը ժամացույցը դիտմամբ կանգնեց, և տանտերը աշխատանքից ուշացավ: Երբ նա գնաց աշխատանքի, գող մտավ տուն: Այս անգամ հավատարիմ շունը դիտմամբ չհաչեց, և գողը գողացավ տարավ ժամացույցը:

ԹԵՏՅԱ ԵԿԱՐԱԳԱ
10 տ. Ուկրաինա



# Ծաղիկ

Մի անուշ ծաղիկ,
Մի քնքուշ ծաղիկ,
Բացվել էր դաշտում,
Լայնարձակ դաշտում:

Բացվել էր այնպես,
Շողում էր այնպես,
Ինչպես աստղիկը
Կապույտ երկնքում:

# Ձկները

Փշշոտ գետը, կապուտակ գետը
Անցնում էր մեր տան կողքով,
Ձկներն էին լողում ջրի ցոլքերում...
Փշշոտ գետը, կապուտակ գետը
Անցնում էր մեր տան կողքով,
Ինչպիսի՜ գետ էր, չքնաղ գետ էր,
Անցնում էր մեր տան կողքով:

ՀԱՍՄԻԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ
Արզական, 6-րդ դասարան



# ԿԱՆԳԱՌՆԵՐ ԺԱՆԱՊԱՐՀԻՆ

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ



## 3. ՏՊԱՐԱՆ՝ ԶԱՐՄԱՆԱԼԻ ԿՅԱՆՔ

Ուսումնարանի ավարտական վկայականի հետ եղբայրս ստացավ միջնակարգ դպրոցի հասունության վկայական: Երեկոյան դասի էր գնում, գիշերները մի անկյուն ճարում՝ կարդալու, իսկ առավոտյան հիշում էր, որ ինքը արհեստագործական ուսումնարանի սան է, ծծիքը պետք է մաքուր լինի, գոտին պինդ ձգած և վերջ: Չարչարանքով ձեռք բերված հասունության վկայականով նա կընդունվեր ցանկացած բարձրագույն ուսումնական հաստատությունը: Բայց հիմա, ոչ դես, ոչ դեն, թերթերի և ամսագրերի տպարանում գիշերներ է լուսացնում, նյութեր է շարում, ինչ որ այդպես եղել է, այդպես էլ պիտի լինի:

— Փորձիր մի տեղ ընդունվել,— ասում եմ ես:

— Մի երկու տարի աշխատեմ, իմ ձեռքով գոնե կոշիկ առնեմ, կոստյում առնեմ...

— Ի՞նչ է, ինստիտուտը չի՞ տալիս, չի՞ հագցնում, չի՞ կերցնում:

— Ինստիտուտը գաղափար է հագցնում, գիտելիք է կերցնում,— իմ տրխուր կատակին լրջորեն պատասխանում է նա:— Ի՞նչ է, երեք տարի ձրի կերանք ու հագանք, հո բոռ չենք: Պետությանը պարտք ենք, աշխատենք, պարտքը մարենք, նոր մտածենք հետագա սովորելու մասին...

Եվ աշխատեց: Այգեստան թաղամասում տուն վարձեցինք: Ես ուրիշ, մի քիչ փոքր տպարանում էի աշխատում: Եղբայրս հոգնած էր գալիս, աչքերը ուռած, բայց միշտ ուրախ: Տպարանում ինչ թերթ ու ամսագիր էր լույս տեսնում, հետը բերում էր, ստիպում, որ կարդամ «էսինչ թերթի էսինչ հոդվածը»: Եվ տալիս էր հեղինակի անունը: Ոչ միայն ինքն է շարել այդ հոդվածը, այլև տեսել, խոսել է հեղինակի հետ: Հեղինակը ոչ միայն խոսել, այլև Հրանտի առաջարկով բառ է փոխել: Այ քեզ հրաշք: Եվ ո՞նց եմ ուզում հանդիպել հեղինակներին: Չհասկացա էլ, թե ինչպես թողեցի «մի քիչ փոքր» տպարանն ու հեղինակներին տեսնելու ցանկությամբ եկա թերթերի տպարանը:

Վարպետ Հարութը մի հոդված տվեց ձեռքս.

— Շուտ շարիր...

Հոդվածի առաջին տողերն ինձ այնպես գրավեցին, որ շնորհակալ եղա վարպետ Հարութին: Հոդվածը Երևանի կոշիկի ֆաբրիկայի մասին էր: Ո՞վ է հեղինակը: Անժիկ Հակոբյանը: Նրան չեմ տեսել, բայց Հրանտը նրա մասին խոսում է աչքերը փախցնելով: Հիմա էլ ես շարում եմ նրա գրած հոդվածը և... փախցնում եմ աչքերս, ասես հեղինակը կանգնած է կողքիս: Բայց հեղինակը մտքով թռել էր դեպի իր (նաև իմ) բոբիկ մանկությունը: Հեղինակը, ինչպես ես ու եղբայրս, գրքի կազմը... ծակ կոշիկի մեջ էր դրել ու գնացել դպրոց: Իսկ հիմա... ծակ տրեխներից ցավը մտել էր իմ ոտքերի մեջ և խոստացել էր այլևս դուրս չգալ: Եվ ուզում եմ հանդիպել նրան: Եվ հանդիպեցի մեր տպարանի բուֆետում: Զարմանալի տըխուր աչքեր ուներ: «Ավանգարդի» սովորող ու ուսանող երիտասարդության բաժնի վարիչն էր և հիշեցրեց, որ մանկությունից, ծակ կոշիկներից ու ձեռքերի մեջ հալվող հացի փշրանքներից բացի... հեռակա դպրոց կա, գնա և սովորիր: Նա այնպես ջերմորեն ու քույրաբար խոսեց, որ ուր էլ ասեր՝ կգնայի:

Տպարանից էքսկուրսիա էինք գնացել Օշական՝ Մաշտոցին այցելության: Մի տուն տարան մեզ: Այգում մեզ հաց ու գինի տվեցին: Ես մի հոդված գրեցի այդ մասին: Այդ փոքրիկ հոդվածը ինքս շարեցի իմ ձեռքով: «Սովետական Հայաստանի» այն ժամանակվա խմբագիր Խաչիկ Հովակիմյանը կրկնակի հոնորար էր նշանակել ո՛չ թե նրա համար, որ լինոտիպիստ եմ և գիշերները, անհրաժեշտության դեպքում, խաթրաշահ եմ, մնում եմ արտաժամյա աշխատելու, այլ որ, ասում էին, լավ էի գրել և թռուցկաժողովում հավանել էին: Հետո նույն թերթի բաժնի վարիչ Զավեն Այվազյանը ինձ գործարան ուղարկեց վետերան վարպետի մասին ակնարկ գրելու... «Ոզնին» մանրապատումներ տպագրեց: «Սովետական Հայաստան» թերթի արբագրիչ Անիկ Խաչատրյանն ասաց՝ ինչ որ գրում ես, գյուղից բերած պաշար է, կվերջացնես ու դատարկ տաշտակի դեմ կկանգնես, գնա դպրոց: «Ավանգարդի» Անժիկին խոստացար ու չգնացիր: Սրբագրչուհի Լիլիկն ասաց՝ տղամարդը խոսքի տերը կլինի, գնա սովորիր: Սրբագրչուհի Դալիան, որ ձեռագրով և հոգով նախ և առաջ ուսուցչուհի էր, ասաց՝ մեր Շահումյանի անվան դպրոցում է տեղավորված հեռակա դպրոցը, արի ընդունվիր...

Տպարանում մի անբացատրելի գեղեցկություն կար: Գրաշարներ, տպագրիչներ, խմբագրությունների աշխատողներ, էջկապներ, ձուլողներ: Կորացած վարպետներ ու երիտասարդներ... «Սովետական դպրոց» թերթում աշխատում էր Վլադիմիր Նազարյանը (այժմ համալսարանի իրավաբանական ֆակուլտետի դասախոս, դոցենտ), որը մոլի ընթերցող էր, զարմանալի հիշողության տեր: Մտածում էի՝ դպրոց էլ գընամ, համալսարան էլ ավարտեմ, մեկ է, Վոլոդյայի չափ բան չեմ իմանա: Անկեղծ ասեմ՝ մինչև հիմա էլ զարմացած եմ նրա վրա: Նա ասաց. «Քառասուն օր ինձ հետ գործ չունեք»: Փակվեց, ֆրանսերեն սովորեց՝ ասպիրանտուրայի համար:

Շարում եմ «Ավանգարդ» թերթի նյութերը, «Սովետական Հայաստան» թերթի նյութերը: Վիկտոր Բալայանն էլ է ասում՝ մտածիր սովորելու մասին: Ռաֆայել Համբարյանն էլ է ասում՝ քեզ կարելի է լինոտիպի մեքենայի մոտից վերցնել և տանել խմբագրություն՝ գրական աշխատանքի, բայց օրենք չկա,

գնա սովորիր: Մարդիկ հեռակայելով, երեկոյան բարձրագույններ են ավարտում, իսկ դու, մի միջնակարգն ի՞նչ է, զլանում ես... Իսկ ես սպասում եմ, թե ե՞րբ է Անժիկ Հակոբյանը գալու հերթապահության, որ նայեմ աչքերին ու լսեմ նրա զարմանալի տխուր պատմությունները պատերազմական ցուրտ և սոված տարիների մասին: Մամուլի մշակ որ ասում են՝ Վիշտ Հակոբջանյանն էր. գալիս էր հոգնած, մինչև կոկորդը նյութերից կուշտ, բայց աչքը ոնց որ ամեն տեղ նյութ էր որոնում, լավ նյութ... Մի խոսքով «Ավանգարդին» ես շատ եմ պարտական: Եղբայրս հենց տպարանից ընդունվեց մանկավարժական ինստիտուտ, իսկ ես՝ հեռակա դպրոց...

Լինոտիպիստ էի և դպրոց էի գնում: Դասարանում աշակերտներ կային, որոնք ուսուցիչներից մեծ էին: Ի՞նչ բարի ուսուցիչ էր Մայրանուշ Պիվազյանը, մի հին բարություն, որը մեզ դարձնում էր առաջին դասարանցու նման: Նա շարունակ հիշեցնում էր, որ կորցրածը միշտ էլ արժե փորձել գտնել:

Շատ ջերմ տողեր կարելի է նվիրել մեր հեռակա դպրոցի բոլոր ուսուցիչներին: Նրանք շատ ներողամիտ էին մեր նկատմամբ:

Քսանհինգ տարեկանում միջնակարգ կրթության վկայական ստացա: Ո՞ւմ եմ զարմացնում: Մեզ Երևան բերող Վահան Հովհաննիսյանի տղաները ավարտել են թատերական ինստիտուտ, երկրաբանական ֆակուլտետ, աղջիկը սովորում է անգլիական բաժնում: Իսկ ես... էլի բան է, շնորհակալ եմ Անժիկ Հակոբյանից, «Ավանգարդից»:

Ընկերս՝ Վազգեն Գաբրիելյանը, հիմա բանասիրության դոկտոր, այն ժամանակ Երևանի համալսարանի թերթի պատասխանատու քարտուղարը, ասպիրանտական քննությունները հաջողությամբ հանձնած եկավ, թե.

— Ժուռնալիստիկայի բաժինը նորից է բացվում, արի գործերդ հանձնենք:

Համոզեց: Ինքը գործերս կազմեց, ինքը հանձնեց, բայց քննությունները, երդվում եմ, ե՛ս հանձնեցի: Առաջին երեք քննությունները հաջող հանձնեցի, վերջինը՝ ոչ այնքան: Գիշերն աշխատել էի տպարանում, հոգնած էի, քնատ, անտրամադիր, գուցե այդպես էլ չլիներ՝ արդյունքը նույնը կլիներ: Լավ էր տպարանում չգիտեին, որ քննություն եմ հանձնում, թե չէ... Ի՞նչ գիտեմ ինչ աչքերով կնայեին: Ես ձախողվել եմ, բայց անհանգստանում է Վազգենը: Կտրեց-հավաքեց տարբեր թերթերում տպագրված մի քանի հոդված-ակնարկներս և ո՛ւր՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության այն ժամանակվա մինիստր Գևորգ Հայրյանի մոտ, ես էլ հետը: Ես՝ գրաշարս, մինիստրի մոտ... Ի՞նչ զարմանալի բան: Մինիստրը այնքան հասարակ ու մտերիմ է պահում իրեն, ոնց որ իմ ակնարկի հերոսներից լինի: Ժըպիտը դեմքին, բացում է թերթերը, նայում.

— Ես էս ակնարկները կարդացել եմ,— ասում է,— ի՞նչ է եղել:

— Գևորգ Արմենակովիչ, նիշերը չեն բռնում, խնդրում ենք ձեր միջամտությունը,— իմ փոխարեն խոսում է Վազգենը:

— Սպասեք... սրանք ավարտածի գրածնե՞ր չեն,— կարծես զարմանում է մինիստրը:

— Ավարտել եմ, բայց հեռակա միջնակարգ դպրոց,— այսքանն էլ ես եմ կարողանում ասել:

— Իսկ մինչև հիմա ինչո՞ւ չես համալսարան ավարտել:

— Արհեստագործական ուսումնարան եմ ավարտել, տպարաններում աշ-

խատել եմ, հեռակա դպրոց եմ ավարտել...

— Առաջ համալսարան ավարտեիր...— կատակում է, ծիծաղում:

Հարմար չեմ գտնում մեջբերելու այն խոսքերը, որ միհիստր Հայրյանը գրեց իմ դիմումի վրա՝ նախապես խոսելով համալսարանի այն ժամանակվա ռեկտոր Նագուշ Հարությունյանի հետ:

Ես դարձա ուսանող:

Հունվարյան քննություններից հետո հրաժեշտ տվեցի տպարանին:

Երբ մեկ տարի հետո գյուղ գնացի, հայրս ասաց.

— Տպարանում գործերդ ո՞նց են:

— Ուսանող եմ,— ասացի:

— Ֆեզեն դեռ չե՞ս ավարտել,— զարմացավ նա:

— Համալսարանում եմ սովորում:

— Ինչո՞ւ, տպարանում լավ չէ՞ր:

— Լավ էր, բայց հիմա համալսարանի ուսանող եմ:

— Համալսարանում ի՞նչ կա, այ որդի, գոնե եղբորդ նման ինստիտուտ ընդունվեիր, հայ մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանի անվան պետական մանկավարժական ինստիտուտի պատմալեզվագրական ֆակուլտետը: Թե չէ համալսարանում ի՞նչ կա, տպարանը թողել ես, համալսարան ընդունվել: Համալսարանն ո՞ւմ անունով է... Ոչ մեկի՞: Տեսնո՞ւմ ես...

Ես շատ եմ սիրում հորս:

## ՄԻՆՉԵՎ ԱՎԱՐՏԵՑԻ

Տպարանից դուրս եկա և զգացի, որ մեկ օր իսկ առանց աշխատանքի չեմ կարող ապրել: Լավ էր՝ աշխատանքն ինքը եկավ ինձ գտավ: Ութերորդ դասարանում մի ուսուցիչ ունեի՝ Սամվել Արսենյան: Գրածս շարադրություններից մի երկու բազմակետերը դարձնում էր վերջակետ, կարդում դասարանի առջև, շնորհավորում հերթական գերազանց թվանշանս... Նա աշխատում էր նաև կույրերի միավորման հրատարակչությունում: Տարավ ինձ կույրերի միավորման հրատարակչության պետ Ալբերտ Մուշեղյանի մոտ: Նա ինձ ընդունեց աշխատանքի:

Ղարիբ Հայրապետյանը, որ «Սովետական Հայաստան» թերթի պատասխանատու քարտուղարն էր, ոգևորված իմ գրած աշնանային մի ակնարկով, երաշխավորեց՝ ընդունվեցի ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ:

Վերջին կուրսի ուսանող էի, մի քիչ հոգնած՝ կույրերի միավորման միապաղաղ աշխատանքներից, երբ նույն Ղարիբ Հայրապետյանի միջնորդությամբ ինձ «Ոզնում» աշխատանքի ընդունեց նրա գլխավոր խմբագիր Գրիգոր Տեր-Գրիգորյանը:

Եվ... համալսարանն ավարտելուց հետո «Ավանգարդի» խմբագիր Լորիս Կրոյանը մի քանի ամիս շարունակ համոզում էր ինձ, որ աշխատանքի անցնեմ «Ավանգարդում»:

— Արդեն համարյա երեսուն եմ, ծեր եմ,— ասում էի ես:

Մի քանի հանդիպումներից հետո նա ինձ համոզեց, որ ես դեռ ծեր չեմ:

1966 թվականի սեպտեմբերից աշխատանքի անցա «Ավանգարդում»:

Դե, արի աշխատիր այն խմբագրությունում, ուր դեռ Վարդգես Պետրոսյանի շունչը կա, Մուշեղ Գալշոյանի, Արամայիս Սահակյանի, Արմեն Հովհաննիսյանի, Հովհաննես Մելքոնյանի, Անժիկ Հակոբյանի: Արի աշխատիր Լորիս Կրոյանի հետ, Վիկտոր Բալայանի... Արի և այդ մարդկանց ստորագրության կողքին դու էլ քո ստորագրությունը դիր, արհեստագործական ուսումնարանի նախկին սան ու տպարանի նախկին բանվոր-գրաշար, այժմ արդեն լրագրող... Իսկ տարիներ անց նաև գրող՝ գրքերի հեղինակ, քո արդեն ճանաչված գրող եղբոր կողքին:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ

# Ո՞Վ Է ՀԱՂԹԵԼՈՒ

Նախքան Երևանի № 120 դպրոցում դասավանդելը, Ժորա Ասատրյանը աշխատել է ոսկերչական գործարանում և հուշանվերների ֆաբրիկայում: Նրա աշակերտների պատրաստած մատանիներից, վզնոցներից, սկուտեղներից դատելով, պետք է որ դպրոց վաղուց տեղափոխված լիներ, և շատ զարմացա, որ այստեղ աշխատում է ընդամենը երկու տարի: Առավել մեծ եղավ զարմանքս, երբ տեսա 9 Ա դասարանի աշակերտ Արմեն Տերտերյանի գործերը: Ընկեր Ասատրյանի առարկան անցնում են 9-րդ դասարանից սկսած: Նայելով Արմենի «Միրամարգ» թևնոց-վզնոցին, «Հայկական սկուտեղին», «Վզնոց-վարդին», կհամոզվեք, որ նա ընդամենը կես տարում մասնագիտություն է ձեռք բերել: Եվ ամենաուրախալին այն է, որ Արմեն Տերտերյանը միակը չէ: Այդ են վկայում Դարբինյան Արսենի պղնձյա սկուտեղը, Ենգիբարյան Գեղամի, Վասիլյան Հարությունի փայտյա նախշավոր պանպանակները, Ջավախյան Ավետիքի, Աղաջանյան Կարենի մելխիորե վզնոցները: Պատրաստված գործերից երևում է, որ աշակերտների նախասիրությունները բազմազան են, ուսուցումը միակողմանի չէ: Նրանք գործ ունեն պղնձի, մելխիորի, փայտի, էմալի հետ:

— Մտադիր ենք,— ասում է դպրոցի դիրեկտոր ընկեր Շահբազյանը,— եկող ուսումնական տարում չորրորդ դասարանից սկսել:

— Իմ աշակերտները 9—10-րդ դասարանցիներն են,— ասում է ընկեր Ա-










# 60-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

սատրյանը,— համարյա բոլորն էլ կոմերիտականներ են և որոշել են Հայաստանի կոմերիտմիության 60-ամյա հոբելյանը նոր գործերով դիմավորել։ Լավագույն աշխատանքները կցուցադրվեն դպրոցի երկրորդ հարկի մշտական ցուցափեղկում, որի նշանաբանն է՝ «Գիտությունը գանձ է, աշխատանքը նրա բանալին»։

Բարձրանում ենք երկրորդ հարկ։ Ցուցադրվող սկուտեղների, վզնոցների, մատանիների, պահպանակների ու նախշազարդ թիթեղների կողքին Մոսկովյան օլիմպիադայի խորհրդանիշ արջուկն է՝ պատրաստված ծղոտից։

— Աղջիկների ձեռքի գործն է,— ասում է ընկեր Շահբազյանը։

Ձեռքի աշխատանքի ուսուցչուհի Սոնա Մարտիրոսյանը ընդամենը մեկ տարի է, ինչ աշխատում է դպրոցում, բայց նրա սաների ծղոտե աշխատանքները ոչնչով չեն զիջում տղաների ստեղծագործություններին։

— Մենք նույնպես Հայաստանի կոմերիտմիության 60-ամյակին նվիրված աշխատանքների մրցույթ ենք կազմակերպելու։ Հաղթողների գործերը կըցուցադրվեն մշտական ցուցափեղկում,— ասում է ընկեր Մարտիրոսյանը։— Դատելով 9-րդ դասարանցիներ Սաֆարյան Թամարայի, Բալյան Անուշի, Չոգլյան Մանիկի, 10-րդ դասարանցիներ Սաղաթելյան Նաիրայի, Պետրոսյան Իվետայի աշխատանքներից, հաղթողներին որոշելը հեշտ չի լինի։

Ս. ԶԱՔԱՐՅԱՆ



Ստորև տպագրված նյութը վերցված է «Костер» ամսագրից: Առաջարկում ենք քննարկել այն ձեր դասարանում, ջոկատում: Ձեր մեջ է՞լ կան մարդիկ, որոնք սպիտակը սև են տեսնում, սևը՝ սպիտակ: Օրինակներ եթե գիտեք, գրեք ուղարկեք: Եկեք մենք էլ մեր «Պիոներ-ի էջերում շարունակենք «Костер»-ում սկսված այս կարևոր զրույցը:

— Մեր դասարանում մեկը կա,— ասացին երկու հինգերորդ դասարանցի աղջիկ,— նրան ոչ ոք չի սիրում: Այնպիսի անդո՜ւրն է Վովան... այնպես զզվելի՜ն...

— Անտանելիի մեկն է: Գիտե՞ք ինչպիսին է, այնպիսի՜ն, որ... ինչպե՞ս ասենք...

Եվ գլուխները ետ գցեցին, աչքերը հառեցին առաստաղին, ասես այնտեղ գրված էր Վովայի բնութագիրը:

Ես պատկերացրի այդ Վովային դըպրոցական կարգուկանոնը խախտող, նույնիսկ մի խուլիգան, որ քանդում, ոտի տակ է տալիս ինչ պատահում է:

— Պատկերացրեք,— շարունակեցին աղջիկները,— բոլորը միաբերան գոռում-գոչում են, իսկ նա դասարան է մտնում այնպես հանգիստ, հանդիսավոր: Ծիծաղելի է: Բոլորին ժպտում է՝ «բարև... բարև»: Անունը դրել ենք «Միստր բարև»: Բոլոր տղաների պայուսակները քրքրված, կեղտոտ են, իսկ նրանը՝ մաքուր է, ոնց որ աղջիկներինը: Երկու խոսքից մեկը՝ «խնդրեմ», «շնորհակալ եմ»: Աղջիկներից ներողություն է խնդրում, եթե հանկարծ դիպչում է: Եվ շարունակ ժպտում է ու ժպտում:

— Դուրս է գալիս, որ Վովան բարեկիրթ տղա է,— բացականչում եմ ես:

— Ի՞նչ եք ասում, զզվելի՜ է,— վըրա են բերում աղջիկները:

## ԱՆՃՈՌՆԻ ԲԱԴԻ՞Կ, ԹԵ՞ ԿԱՐԱՊ

Չէի պատմի ձեզ այս դեպքը, եթե հաճախ դժվար չլիներ ապացուցել և համոզել երեխաներին, որ սևը՝ սև է, սպիտակը՝ սպիտակ: Եվ որ խելացի, բարի, դաստիարակված լինելը լավ է, ոչ թե վատ:

Խմբագրությունները հաճախ են նամակներ ստանում, որոնց հեղինակնե-

րը հարցնում, գանգատվում, խնդրում են՝ «Ասացեք խնդրեմ, ինչպես վարվեմ: Ես գերազանցիկ եմ: Դրա համար ինձ ծաղրում են, կոչում պրոֆեսոր, անգիր անող, անգամ... աղջիկ: Ի՞նչ անեմ, սկսեմ վա՞տ սովորել»:

«Մեզ մոտ եկեք, խնդրում եմ: Մեր աղջիկները սիրում են վազել մոդայի ետևից, իսկ ես չեմ սիրում: Բարկանում են, որ ինձ չեն հետաքրքրում խոսակցությունները շրջազգեստի ճեղքի և ջինսի մասին ու համարում են, թե ես ինձ երևակայում եմ»:

«Ես շատ տխուր եմ: Մենք ունենք բնագիտության մի բարի, շատ բարի ուսուցչուհի: Իսկ մեր դասարանցիները ծաղրում են նրան: Նա արդեն ծեր է, վատ է լսում: Նրա դասին քրքջում են, բարձրաձայն հուշում, համարյա թե ոռնում են: Իսկ ինձ արհամարհում են նրա համար, որ ուսուցչի կողմն եմ պահում: Ասում են, թե ես քծնում եմ նրան:

Դժվար է այսպիսիների հետ: Մի՞թե նման դեպքում մեծամասնությունը ճիշտ է»:

Անդերսենն ունի մի հեքիաթ, որ կոչվում է «Անճոռնի բադիկը»: Հիշո՞ւմ եք, բադիկն իսկի էլ անճոռնի չէր, նա պարզապես բադիկ չէր: Նա մի փոքրիկ կարապիկ էր, այդ պատճառով էլ բադիկներից տարբերվում էր: Նույն վիճակում չէ՞ հինգերորդ դասարանցի Վովան, որ նման չէ իր անկարգ համադասարանցիներին:

Մարդու կյանքը գնում է իր ընթացքով: Մարդը սովորում է ինքնուրույն մտածել, տարբերել չարն ու բարին: Եվ որ ամենակարևորն է, միշտ բարու, լույսի, բանականի կողմն է:

Հեշտ չէ ծույլերի մեջ աշխատասեր, մակերեսայինների մոտ՝ խոր լինելը: Դա ուժ և արիություն է պահանջում:

Մի աղջիկ ինձ պատմեց, թե ինչպես իր համադասարանցիները որոշում են փախչել մաթեմատիկայի դասից, պատժելու համար ուսուցչին, որն իրենց չիմացած դասի համար երկուս էր նշանակել: Այդ աղջիկը ջոկատի խորհրդի նախագահն էր և շատ էր վախենում դասարանին հակադրվելով հեղինակազրկվել: Նա գիտեր, որ համադասարանցիները ճիշտ չեն, բայց քաջություն չուներ իր համոզմունքով շարժվելու: Մինչդեռ պահելով արդարության կողմը, մարդն ինքն է դառնում ամուր և ուժեղ:

Ես հանդիպեցի Վոլոդյա Դոլինին, որից այնպես ոժգոհում էին հինգերորդ դասարանցի աղջիկները: «Միստր բարևը» շատ համակրելի մարդ էր: Ճիշտ է, նա համադասարանցիներից մի փոքր մեծ էր երևում, պահում իրեն ոչ այնքան սովորական, բառերը չէր ծամծմում, հայացքը դես-դեն փախցնում, չէր ծռմռվում: Նա քաղաքավարի էր, հանգիստ, տիրապետում էր իրեն:

Ի՞նչն էր նրան այդպիսին լինելու ուժ տալիս:

Ես կարծում եմ համոզմունքը, որ ինքն այլ կերպ լինել չի կարող, այլ կերպ չի կարելի: Նա ամաչում է վատ արարքից, լավից չի ամաչում: Կարևոր հատկություն է այս, որ պետք է յուրաքանչյուրն իր մեջ պահպանի:

Դո՞ւք ինչ կարծիքի եք:

*ԻՐԻՆԱ ՕՆԻ*

ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

## Հեռատես ծիտը

Բույն էր դրել ծիտիկը
Մի մասրենու թփի տակ
Եվ հանել էր բնի մեջ
Չալպուտուրիկ երեք ձագ:
Փորձեցի ես մոտենալ
Փուշը ձեռքս ծակծկեց,
Մայր ծիտիկը մոտերքից
Վախվորած ճիչ արձակեց:
Ես թողեցի հեռացա,
Մտածելով, ինչու՞ է
Բույնը այնտեղ դրել նա:
Եվ հասկացա, տղաներ,
Ծիտը փշին է ընտրել
Հավատարիմ պահապան,
Որ իր փոքրիկ ձագերին
Չար ձեռքերը մոտ չգան:

## Կորած ձագուկը

Բա՛րձր, բա՛րձր քարափի
Խոռոչում մի անվտանգ
Բույն էր դրել աղավնին՝
Ձագերն առած թևի տակ:
Մեկ-մեկ տանում էր նրանց
Բնից մի փոքր հեռու,
Սովորեցնում սեփական

Թևիկներով թևելու:
Ինչպես եղավ, ձագերից
Մեկը հանկարծ ընկավ ցած:
— Կորա՛վ ձագուկս, ավա՛ղ,—
Մայրը ահաբեկ ճչաց:

Բայց նա կանգնել էր քարին
Ու նայում էր իր մորը.
Իրիկնամուտ էր իջել,
Արդեն մթնում էր օրը:

Ու մեկ էլ մայր աղավնին
Ո՛նց է, ո՛նց է տես, ցնծում,
Նրա կորած ձագուկը
Դեպի բույնն էր թևածում:

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ



# Աշնան մառան

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

... Հին մառանի դուռը բացվել,
Ետ է ընկել իր կրունկին,
Կողովները ներս են մտնում՝
Թիկնած հորս ջիլ-թիկունքին:

Ասես մրգի շքերթ լինի,
Մրգի հանդես՝ ցուցասրահ...
Իրար կողի խուտուտ տալիս,
Ծիծաղում են իրար վրա:

Մրգի հավաք՝ սրահի մեջ,
Մարգ ու այգու հուշամատյան...
Ու լցվում են անուշ հոտով
Սալա-զամբյուղ բերնեբերան:

Խաղողնահա չամիչ-չամիչ
Քաղցրությունը կուտակել հեզ,
Նայում է մեզ կախաններից,
Տատիս բարի աչքերի պես:

Նուռն է բացել ատամներն ալ
Ու ծաղրում է սրան-նրան,
Սերկևիլը քիթն է կախել,
Որ չի լսում էլ ջրի ձայն:

Ծառ են շարվել թելի վրա
Սրսուռ տանձերն աշնան ձեռով,
Խնձորներն են դեռ զրուցում
Մայր արևի կուշտ բարբառով:

Ծամամները հասուն ու լի
Պատուհանի գոգին թառել,
Եվ բարբարոս նրանց բույրից
Ծղրիդներն են անուշ քնել:

Դարկերի մեջ՝ կաղին, ընկույզ,
Հրմշտում են իրար այնպես,
Որ անտառն է կարծես խշշում
Նրանց ամուր կեղևից ներս:

Պղպեղները՝ կարմիր շարուկ,
Բարկ լեզուներ՝ իրար սովոր,
Մի անկյունում տաք հարդի մեջ
Սեխ-ձմերուկ ննջում են խոր:

Սյուներն ի վար ավելուկի
Փաթույթ եկած չորուկ հյուսքեր,
Ինչպես հուլունք՝ պլոճ-մասուր
Մառանի թուխ վիզն են ընկել:

Հեռու՜-հեռու՜ այս ժխորից,
Դրսում մարգեր՝ թոշնած-տրտում,
Ուր կաղամբն է ցրտի ահից
Իր գլուխը թուփ-թուփ փաթթում:

Գետնախնձորն՝ աչք-աչք պառկել,
Մինչև գարուն՝ խոր քնի մեջ,
Զյունից պիտի կաթ հավաքի,
Մերի սարսուռ մարմնի մեջ:

Դդումներն էլ դրսում են դեռ
Չափարի մոտ ու գլխաբաց,
Կող են տալիս աշնան շողեր,
Արեգակից չկշտացած:

Թափուր այգու քունն է հսկում
Ծեր քողտիկը՝ պահակի պես,
Արևծաղկի մի չոր ցողուն
Զեռքի փայտը լինի ասես:



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 41. ԻՆՉՊԵ՞Ս Է ԼԻՆՈՒՄ, ՈՐ ԳՐՈՂՆԵՐԸ ԳՐՈՒՄ ԵՆ ՄԻԵՎՆՈՒՅՆ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼԵԶՎՈՎ, ԲԱՅՑ ՄԵՆՔ ԿՌԱՀՈՒՄ ԵՆՔ ՈՎ Է ՀԵՂԻՆԱԿԸ, ԿԱՄ՝ ՀԱՄԱԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆ ՈՃԻ ՄԱՍԻՆ

Գրական որոշ ճաշակ ու զարգացում ունեցող ընթերցողը, կարդալով այս կամ այն խոշոր գրողի գրվածքը, հենց միայն լեզվից կարող է գլխի ընկնել, թե ով է դրա հեղինակը: Բայց չէ՞ որ բոլոր հեղինակներն էլ գրում են միևնույն համազգային լեզվով: Այդ նույնը կարող ենք ասել նաև ձեռագրի մասին: Բոլորս գրում ենք նույն մեսրոպյան տառերով, բայց երբ ձեր լավ բարեկամից նամակ եք ստանում՝ ծրարից արդեն չե՞ք կռահում ով է հեղինակը: Ամեն մարդ իր ձեռագիրն ունի, որ ավելի կամ պակաս չափով տարբերվում է մեկ ուրիշի ձեռագրից: «Սա նրա ձեռագիրն է» արտահայտությունը հասկացվում է և՛ ուղղակի իմաստով, և՛ փոխաբերաբար՝ այդպես կարելի է ասել նաև փականագործի աշխատանքի մասին, այսինքն թե՝ սա նրա ձեռքի գործն է:

Կարծեմ մի անգամ արդեն խոսել ենք լեզվի մի զարմանալի հատկության մասին, որ առաջին անգամ նկատել է մեծ գիտնական Վիլհելմ Հումբոլտը, այն հատկության, որ լեզուն միաժամանակ և՛ համընդհանուր երևույթ է, միանգամայն անկախ, առանձին մարդու կամքից ու գիտակցությունից, և՛ անհատական երևույթ՝ ընդունակ արտահայտելու առանձին մարդու մտածողության եղանակը, ճաշակը, խառնվածքը: Ահա ինչու ֆրանսիացի գիտնական Ժորժ Բյուֆոնը լիակատար իրավունք ուներ ասելու. «Ոճը ինքը մարդն է»:

Եթե վառ, ինքնատիպ անհատականություն է մարդը՝ նրա խոսքն էլ վառ ու ինքնատիպ է լինում: Ասվածը կապ չունի մարդու գրագիտության աստիճանի հետ: Դուք չե՞ք հանդիպել կրթությամբ աչքի չընկնող, շատ հասարակ մարդկանց, որոնք խոսում են վառ ու տպավորիչ: Ես հանդիպել եմ: Հակառակն էլ կարող է պատահել՝ լավ կրթության տեր մարդ, խոսում է կատարելապես գրագետ, բայց անհամ ու անգույն: Դա նկատի ուներ Ալ. Շիրվանզադեն, երբ գրում էր. «Մի մարդ կարող է լեզվի կանոնները շատ լավ իմանալ, բայց ոճ չունենալ»:

Կարող է հարց ծագել՝ ո՞րն է լավ, անթերի գրագետ, բայց անգու՞յն, թե ընդհակառակը՝ ոճով գունեղ, բայց ոչ այնքան գրագետ խոսքը:

Լավն այդ երկուսի համադրումն է՝ քերականորեն ճիշտ և ոճականորեն վառ խոսքը: Այդպիսի խոսքի վարպետները տաղանդավոր գրողներն են՝ դասական թե ժամանակակից: Եվ եթե մենք բնությունից տրված տաղանդ չունենք նրանց պես գրելու համար, ապա ունենք նրանցից սովորելու պարտավորություն: Նրանց գրքերը պետք է կարդանք ոչ թե հենց այնպես, միայն դեպքերի զարգացմանը հետևելով՝ տեսնենք վերջն ի՞նչ է լինելու (կարդալու ամենավատ ձևը), այլ նրանց ոճի

մեջ խորամուխ լինելով, հետևելով, թե նրանք լեզվառճական ի՞նչ հնարքներ, միջոցներ, եղանակներ են գործի դնում իրենց խոսքին հմայք տալու համար: Դա է ընթերցման ամենալավ ձևը, որ նույնպես հարկավոր է յուրացնել: Էլ ավելի լավ կլինի, եթե մի առանձին տետրակում արտագրեք ձեր հավանած բառերն ու դարձվածքները: Արտագրելով, ժամանակի ընթացքում դուք էլ չեք նկատի, թե ինչպես այդ ամենը ձեր սեփականությունն է դառնում:

Ինչքան հարուստ լինի բառերի ու դարձվածքների ձեր ամբարած պաշարը, այնքան ավելի մեծ կլինի ընտրություն կատարելու, խոսքի մեջ ձեր անհատականությունն ի հայտ բերելու հնարավորությունը:

Այսքանը ոճի անհատական բնույթի մասին:

Ոճի ընտրությունը կախված է նաև կյանքի հազար ու մի հանգամանքներից:

Նույն մարդն ամբիոնից այլ ոճով է խոսում, թեյասեղանի շուրջը զրուցելիս՝ այլ, պաշտոնական անձին դիմում գրելիս մի ոճ է գործադրում, ընկերոջը նամակ գրելիս՝ մեկ ուրիշ: Շնորհքն էլ հենց այն է, որ մարդ իմանա, թե կյանքի ինչ հանգամանքներում ինչ ոճ պետք է բանեցնի, այլապես նա կարող է ընկնել ծիծաղելի վիճակի մեջ: Խոսքի ոճը կարող է լինել գիտական և հրապարակախոսական, պաշտոնական և մտերմիկ, հանդիսավոր և խոսակցական, վերամբարձ և հասարակ, քնարական և գրքային, գրասենյակային և հեռագրային, գործնական և հեգնական և այլն:

Ո՞րն է սրանցից ամենալավը: Բոլորն էլ լավ են, բայց ամեն մեկն իր տեղում և իր ժամանակին (ուրիշ բան, որ կան ոճի կատարելապես մերժելի դրսևորումներ, ինչպես գռեհիկ և խրթին ոճերը, որոնցից պիտի հեռու կենալ բոլոր դեպքերում):

Մեր թվածները ոճի բազմաթիվ տարատեսակներն են, իսկ խոշոր խմբավորմամբ, լեզվաբանները ճանաչում են ոճի հետևյալ չորս տեսակները.

բանավոր խոսքի ոճ,

գրավոր խոսքի ոճ,

գիտական ոճ,

գեղարվեստական ոճ:

ԲԱՆԱՎՈՐ ՈՃԸ չափազանց ազատ է գրավորի համեմատությամբ: ԳՐԱՎՈՐ ՈՃՆ ավելի կանոնավոր է ու մշակված, բայց չունի նախորդի կենդանությունը: ԳԻՏԱԿԱՆ ՈՃԻ գլխավոր հատկանիշը ճշգրիտ լինելն է՝ առանց հուզական գունավորման: Մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի դասագրքերից նկատած կլինեք, որ դրանց շարադրանքի ոճը ստույգ է, տրամաբանված, բայց և չեզոք է, չունի և պետք էլ չէ, որ ունենա հուզական շունչ: Ինչու՞: Որովհետև գիտական ոճը գործ ունի ընթերցողի մտքի, գիտակցության հետ: Մինչդեռ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ՈՃԸ հուզական է և պատկերավոր, չեզոք չէ՝ կրում է գրողի անհատականության կնիքը: Ինչու՞: Որովհետև գեղարվեստական երկը գործ ունի ընթերցողի ոչ միայն մտքի, այլև սրտի հետ, նպատակ ունի հուզականորեն համակելու մարդուն, ներազդելու նրա հոգու վրա: Գեղարվեստական ոճի այդ հատկանիշները նկատի ուներ Դերենիկ Դեմիրճյանը, երբ գրում էր. «Ոճը խոսքի ծաղիկն է, տիրությունը, զարդույթը, խոհական երազանքը», «Ոճը սկսվում է այն ժամանակ, երբ խոսքի ձևի մեջ զգացվում է առանձնահատուկ տրամադրություն, բնորոշ մի գիծ, մտքի խաղ, պատկերավորություն և այլն»:

Ինչպե՞ս անենք, որ մեր խոսքի ոճը, գրավոր խոսքի թե բանավոր, լինի գունեղ ու գրավիչ և ներդաշնակ կյանքի հազար ու մի հանգամանքներին:

Մեր բոլոր նախորդ զրույցները ուղղակիորեն կամ անուղղակիորեն կապված են եղել այդ գլխավոր խնդրի հետ, այդ նպատակին ծառայող միջոցների ընտրությանը:

Մեր հաջորդ զրույցները ևս կհետապնդեն նույն նպատակը:

# ՍՐԲԱԶԱՆ ԲԵԿՈՐՆԵՐԸ

*ՍԻՄՈՆ ՖԱՐՄԱՆՅԱՆ*

Շատ անգամ եմ ուսուցչանոցից դասարան գնալիս՝ միջանցքի հատակին, երբեմն էլ դասարանների նստարանների տակ տեսել հացի ու թխվածքի խոշոր, սպիտակ կտորներ, որոնք տրորվել են երեխաների ոտքերի տակ: Այդ պահերին սիրտս էլ է տրորվել, կռացել եմ, վերցրել այդ նշխարները, ակնածանքով դրել սեղանին ու նոր միայն սկսել դասը:

Մի անգամ էլ, երբ երեխաները զարմանքով նայեցին ինձ ու սեղանին դրած հացի կտորներին, ես պատմեցի նրանց այն, ինչ հիմա ձեզ եմ պատմելու:

60 տարի առաջ էր: Թուրք զորքը ետ էր քաշվել, մենք նորից վերադարձել էինք մեր ավերված գյուղը: Մեր տան մի անկյունում, նոր թաղած թոնրի շուրջը ծվարած ապրում էինք մերկ ու կիսաքաղց, բայց երջանիկ, որ կրկին հայրենի հողի վրա ենք: Բայց սով էր ամենուր:

Անտառից մարխի կոճղ էինք բերում, լուցկու նրման ճղճղում, տանում, հարևան գյուղերում եգիպտացորենի հետ փոխանակում և դրա ձավարով ապուր եփում, ուտում, շատ անգամ առանց աղի ու յուղի, առանց մի կտոր հացի:

Հայրս երեկոները թոնրի շուրջը, մարխի աղոտ լույսի տակ մեզ հեքիաթներ էր պատմում լույս ու մութ աշխարհների, կուշտ ու քաղցած մարդկանց մասին: Կուշտ մարդ այն օրերին քիչ կար, իսկ քաղցած՝ ինչքան ուզեք: Մեր գյուղում մեկը շատ հաց ուներ թաքցրած և կատաղի շուն էր դռանը կապում, որ մոտեցող աղքատներին ներս չթողնի:

Իսկ Ջավախքից եկող մուրացկանները շատ-շատ էին: Նրանք իջնում էին գյուղի ծայրի մարագում և ապա գնում ձորի գյուղերը հաց մուրալու: Նրանցից մեկը ամենից խոր հետքն է թողել իմ հիշողության մեջ: Վասո քեռի էինք ասում: Երկու փոքրիկ տղա և մի դեռատի աղջիկ հետը եկել էին: Կինը մահացել էր գաղթի ճամփին, գնում էին Վալե՝ հարազատների մոտ մի կերպ ձմեռը անցկացնելու: Հայրս վրացերեն լավ գիտեր: Գաղթի մի տարին ապրել էին Խաշուրիի Ալի գյուղում, վրացիք պահել ու շահել էին մեզ և տուն ուղարկել, մենք պարտական էինք վրացու հյուրընկալությանը և չեն արտին: Դրա համար էլ Վասո քեռուն և իր երեխաներին հյուր ընդունելու այդ օրը մայրս շատ ուրախ ու առատաձեռն էր դարձել: Թոնրի վրա նախ տեղավորեց մրսած երեխաներին, ապա մեծ ղազանով եգիպտացորենի ապուրը դրեց օջախի վրա, ընկավ գյուղը, հարազատներից հաց փոխ բերեց: Թոնրափին կերանք տաք ապուրը գարի հացի հետ:

Այդ օրը մեզ համար նոր տարի էր: Վասո քեռին փառք տվեց աստծուն, հորս թութունից չիբուխը լցրեց ու հոգոց հանելով սկսեց մի հեքիաթ.

— Ինձ պես խեղճ մի մարդ է լինում, իր որբ ու սոված երեխաներին







առած գնում է բախտ որոնելու: Մութ գիշերին դեմը մի լույս է վառվում, հետն էլ մի ձայն է լըսվում՝ անոթի մեռա՜, անոթի մեռա՜: Կարծում են իրենց բախտակից է, մոտենում են ու ինչ տեսնում՝ մի շքեղ սեղան, վըրան ամեն ինչ կա, բացի հավքի կաթից: Մի չաղ, չար աչքերով հաստափոր մարդ վազում է սեղանի չորս բոլորը և ամեն ինչից առնում, ագահորեն բերանն է տանում ու հետն էլ բղավում՝ անոթի մեռա՜, անոթի մեռա՜:

Աղքատին հենց որ տեսնում է, ամանները շպըրտում է նրա ու երեխաների երեսին, հացերը գետնով է տալիս, տրորում ոտների տակ... Մեկ էլ լույսը մարում է և... սեղանն էլ չքանում:

Աղքատները փոր-փոշման թողնում գնում են, մթան մեջ ճամփան կորցնում: Այս անգամ էլ հանկարծ մի ուրիշ ձայն է հասնում նրանց ականջին՝ եկեք հա՞ց ունենք, եկեք հա՞ց ունենք: Գնում են ձայնի ուղղությամբ, տեսնում են մի մարդ նստել է քարին, ծնկանը՝ մի կտոր գարի հաց, ու կանչում է՝ եկեք հա՞ց ունենք, եկեք հա՞ց ունենք: Սովալլու[illegible] բեխաները մոտենում են մարդուն, սա [illegible]ելով երեխաներին՝ ժպտում է,

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

տեղից վեր թռչում ու ձեռքի հացը հավասար բաժանում նրանց: Սրանք սկսում են հացը կրծել, բայց... ո՞վ զարմանք, ձեռքների հացի կտորները փոքրանալու փոխարեն, մեծանում են, հա մեծանում ու դառնում մի-մի սպիտակ բոքոն: Մարդը ժպտում է, երջանկությունից պայծառանում, և...

Արև է բացվում աշխարհի վրա: Արև բացվի բոլոր բարի մարդկանց վրա, հետո էլ քո և իմ երեխաների վրա,

Մանուկ ախպեր,— վերջացրեց իր հեքիաթը Վասո քեռին: Հետո դիմելով մեզ՝ ավելացրեց.— Բալիկներս, մի առավոտ էլ դուք կստանաք ձեր բաժին ճերմակ բոքոնները աշխարհի ամենաբարի մարդուց:

Այդ հեքիաթում առավոտ էր, իսկ մեզ մոտ՝ դեռ խոր գիշեր:

Մայրս թոնրի շուրջը տեղ գցեց: Մի վերմակի տակ Վասո քեռին քընեց իր գերդաստանով, մյուսի տակ՝ մենք:

Բոլորը քնեցին, իմ քունը չէր տանում: Երազում էի Վասո քեռու ասած առավոտը, որ տեսնեինք աշխարհի ամենաբարի մարդուն և նրանից ըստանայինք ամեն մեկս մեր բաժին բոքոնը:

— Եկավ այդ առավոտը և ստացանք բոքոնները: Ահա այդ նվիրական բոքոնների կտորներն են սրանք,— դիմեցի ես աշակերտներին՝ ցույց տալով սեղանին դրված հացի կտորները,— սրանք միշտ սեղանի վրա պիտի լինեն և ոչ ոտքերի տակ,— վերջացրի ես պատմությունս և դարձա, գրատախտակին գրեցի «Այսօր էլ աշխարհի բոլոր ծայրերում դեռ շատ մանուկներ կան, որոնք կարոտ են մի կտոր հացի» նախադասությունը՝ տանը վերլուծելու համար:





# Աղջիկը

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

Ժամանակով, ժամանակով,
Փորձենք հիշել,
Երբ կար ցերեկ ու կար գիշեր,
Երբ լուսին կար ու կար քամի,
Աղջիկ կար մի
Ու կա հիմի...
Ու թե նրան չես նկատում,
Քեզ արթմնի տիրել է քուն
Ու քնի մեջ նրան պիտի
Փնտրես գտնես ծալքերի մեջ
Քո մտքերի ու քո սրտի...

Թաքնվում է ցերեկը նա
Լույսերի մեջ, մեր աչքերում,
Խնձորենու նեղնի տակ,
Ծաղիկների թերթերում.
Մեր խոսքերում բարի-բարի,
Ժպիտներում
Եվ սրտերում մեր մայրերի:

Առավոտյան արևի դեմ
Միտն է երգում շնչակտուր՝
Ապրում է նա այդ երգի մեջ,
Թռչուններին
Նա է տալիս երգ ու փետուր,
Ապրում է նա այն հեքիաթում,
Որը ունի բարի մի վերջ...
Ու երբ տխրես,
Այդ նա է քեզ
Գոտևորում ու փարատում:
Ու մենք էլ երբ
Իրար հանդեպ
Մի լավ բան ենք ասում,
Անում,
Իսկույն մեր մեջ է հայտնվում:

Նա չլինի
Երկիրը մեր ո՞վ պտտի,
Առանց ցնցում ու ներդաշնակ
Առաջնորդի
Տիեզերքի անհուններում,
Օրենքի մեջ մեծ անդունդի:
Նա չլինի
Մարդկանց հոգուն կիջնի սև ամպ
Ու կնայեն իրար քինով
և չարությամբ,
Կվախենան մեկը մեկից,
Կդառնան բիրտ, անկարեկից:
Այնպես անենք, այնպե՛ս անենք,
Նրան շահենք, նրան պահենք,
Որ նա լինի միշտ մեր կողքին,
Ամռան տապին,
Ձմռան բքին,
Թե քնի մեջ, թե արթմնի,
Թող նա միշտ մեր կողքին լինի:

Նկ. ԱՐԱ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Հսկայակազմ տըղա, անունդ ի՞նչ է,— հարցրեց ուսուցչուհին Նորեկին:

— Անունը հսկայակազմ է,— պատասխանեց Վաչեն ծիծաղելով:

Ուսուցչուհին սաստեց Վաչեին, բայց դասարանի մեջ խինդ-խնդուք էր ծայր առել:

Նորեկը կաս-կարմիր կտրեց:

— Անունս Փարթամ է,— կմկմաց նա:

-- Ինչ էլ հարմար է մարմնիդ,— միջամտեց Ռոբերտը:

Տղաները ավելի կուշտ ու կուռ են խնդում: Ուսուցչուհին ռարձյալ սաստում է ու երկու տղաներին էլ պատժում: Բայց «հսկայակազմ» անունը մնում է Փարթամի վրա: Գեղեցիկ չէր նա. եր-



կար, նապաստակի ականջներ, Պինոքիոյի խոշոր քիթ, հաստ շրթներ, ծաղրանկարի տեսք ունեին:

Բայց ինքն ի՞նչ մեղք ուներ:

Համադասարանցիները, սակայն, անգիտակից անգթությամբ, զբոսանքի ժամանակ շրջապատում էին Փարթամին ու. «Հսկայակազմ, ականջներդ ո՞ր իշուկից ես փոխ առել»,— հարցնում էր Վաչեն:

— Պինոքիոն հորեղբորդ տղա՞ն է,— հարցնում էր Հակոբիկը:

— Ով գիտե որքան ես սուտ խոսել, որ քիթդ այսքան խոշորացել է,— ծիծաղում էր Ռոբերտը:

— Տորք Անգեղի թոռնի՞կն ես,— բրբջում էր Սոնիկը:

— Այս հսկա մարմնով որքա՜ն էլ վախկոտ ես,— վրա էր բերում Նորան:

Այդ անհոգիների քիթը ճզմելու անհուն փափագ ուներ Փարթամը: Հերիք էր որ ձեռքը բարձրացներ... Բայց մնում էր անշարժ ու լուռ: Ծանր նայվածք էր միայն գցում այդ անգութների վրա ու շուռ գալիս, գնում:

Այո՛, մարմինը անսովոր խոշոր էր ու ինքը գեղեցիկ չէր... Բայց սիրտը բարի ու գեղեցիկ էր երկնքում ճախրող աղավնիների պես: Եթե ոչ, ինչպե՞ս կարելի էր համբերել նրանց ծաղրանքին:

Ի՞նչ էին իրենից ուզում:

Նայվածքն ուղղում էր երկնքին՝ կարծես հարցի պատասխանը որոնելու:

Գրատախտակի վրա մի օր ծաղրանկար էր գծված: Ուսուցչուհին հարցրեց թե ո՞վ էր այդ անճոռնի գծագրության հեղինակը: «Հսկայակազմն է, Հսկայակազմն է»,— գոռացին ամեն կողմից:

— Իրոք դո՞ւ ես գծել,— հարցրեց ուսուցչուհին:

Փարթամը չպատասխանեց, հանդիմանանքով նայեց ընկերներին, ապա գլուխը կախեց:

— Վախկո՛տ,— շշնջաց Նորան, երբ դուրս էին ելնում դասարանից,— ինչո՞ւ չբողոքեցիր, Վաչեն էր գծողը:

Եկավ ձմեռը: Տղաները խանդավառված՝ ձյունե մարդ էին շինում: Փարթամը ինքն էլ մոտեցավ նրանց և բերանը բաց, հափշտակված դիտում էր:

Մեկ էլ ձյունե կարծր մի գնդակ իջավ քիթքերանին: Փարթամը ցնցվեց և դեռ ինքնիրեն չգտած՝ ուրիշ ձյունե գնդակներ տեղացին գլխին: Կծկված մնաց իր տեղը: Տղաների ճիչերը ականջները ծակում էին՝ «Էլի՜, էլի՜, նորի՜ց, նորի՜ց...»:

Հսկայակազմը այդ վայրկյանին կուզեկտ էր մկան չափ պստիկ լինել: Ու եթե իր անիծյալ հպարտությունը չլիներ, բարձրաձայն լաց կլիներ:

Զանգը հնչեց ու դասարան մտան, տղաները մոռացած իրենց «խաղալիք Հսկայակազմին» հետևեցին դասին:

Դասերից հետո խնդալով, աղմկելով դասարանից դուրս ելան: Վաչեն պայուսակը թևի տակ, անընդհատ ձյունե գնդակներ շինելով, նետում էր սրանրա վրա:

Փարթամը դիտմամբ ետ էր մնում. ստացած հարվածների ցավը դեռ չէր անցել:

— Ծանր նշան բռնի, շանը,— ձայնեցին տղաները: Վաչեն անմիջապես երկու խոշոր ձյունե գնդակներ տեղաց շան գլխին: Շունը, փողոցի հսկա շուն, նախ զարմացած, ապա կատաղած՝ ատամները կրճտացրեց ու դիրք բռնեց: Վաչեն մեկ հատ ևս նետեց ու փախավ. շունը հաչելով հարձակվեց Վաչեի վրա: Տղաները վախեցած այս ու այն կողմ փախան: Վաչեն լեղապատառ՝ գոռալով վազում էր...

Փարթամը հսկա քայլերով հասավ Վաչեի և շան մոտ: Շունը բռնել էր

Վաչեի տաբատը և քաշքշում էր մըռընչալով: «Հսկայակազմ ախպեր ջան, ինձ ազատի»,— աղաչեց Վաչեն լալահառաչ:

Փարթամը ոտքի մի կոշտ հարված հասցրեց շանը, շունը բարկացած դարձավ, վրա քշեց Փարթամին: Սկսվեց կատաղի կռիվ... Անցորդները հասան ու Փարթամին ազատեցին կատաղած շան ճանկերից, խեղճ տղի ձեռքերից արյուն էր հոսում: Տղաները շրջապատեցին նրան ու ակնածանքով դիտեցին արյունոտ ձեռքերը:

— Այդ ի՜նչ կռիվ էր,— ձայնեց Հակոբիկը:

— Իրոք որ քաջն Վարդանի թոռնիկն ես եղել,— ձայնեց Պողոսը:

— Այդ ի՜նչ կռիվ էր,— կրկնեց Հակոբիկը:

— Հսկայակազմը հերոս է, կեցցե՜ մեր Հսկայակազմը,— գոչեց Վաչեն:

— Կեցցե՛ մեր Հսկայակազմը, կեցցե՜ մեր հերոսը,— արձագանք տվին մյուսները խանդավառ:

Փարթամի սիրտը ուրախությունից պայթելու աստիճան ուռավ: Նա իր խոշոր, ծուռ ու մուռ ատամները մերկացնելով ծիծաղեց բարձրաձայն ու լցկտուր:

Այդ գիշեր, Հսկայակազմը չկարողացավ քնել...

— Մայրիկ,— շշնջաց մորը,— ընկերներս ինձ սիրում են:

Մայրը շոյեց նրա գլուխը:

— Ջագուկս...

— Ես հերոս եմ, հսկայակազմ հերոս, ընկերներս ինձ սիրում են,— կըրկնեց գոհունակ ու համբուրեց մորը:

Մոր աչքերը թրջվեցին, նա օրհնեց որդու ընկերներին, որոնք անգիտակցաբար, երջանիկ լինելու հույս էին ներշնչել իր տգեղ զավակին:


Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ





# ՄԵՐ ԷՔՍԿՈՒՐՍԻԱՆ

**Մենք դասարանի աշակերտներով որոշեցինք գնալ դեպի լեռները՝ արևածագը դիմավորելու:**

**Գարնանային արձակուրդներն արդեն սկսվել էին: Վաղ առավոտյան բոլորս մեկ մարդու պես հավաքվեցինք: Երբ ճամփա ընկանք, հրաշալի պատկեր բացվեց մեր առջև: Մենք անցնում էինք անդնդախոր ձորերով, օձապտույտ ճանապարհներով, հիանում հսկա ժայռերով: Այնքան գեղեցիկ էր այդ բոլորը, որ չհասկացանք, թե երբ հասանք տեղ: Այնտեղ՝ վերևում, ցողաթաթախ ծաղիկներ կային, որ փայլփլում էին բազմերանգ գույներով: Մենք ուրախ ձայն էինք տալիս մեկմեկու և լսում արձագանքը:**

**Ահա և արևը դուրս եկավ: Ի՜նչ հրաշալի պատկեր...**

*ՀԵՐՄԻՆԵ ԱԼՋԱՆԴՅԱՆ*

*Կիրովականի Վ. Տերյանի անվան № 5 դպրոց, 6-րդ դասարան*

# ՀՐԱԺԵՇՏ ԲՈՒՍԱԲԱՆՈՒԹՅԱՆԸ, ՈՂՋՈՒՅՆ ԿԵՆԴԱՆԱԲԱՆՈՒԹՅԱՆԸ

Մի ամիս էր, ինչ կենսաբանության ուսուցչուհի ընկեր Ֆերոյանի ղեկավարությամբ նախապատրաստվում էինք այդ հանդիսավոր օրվան: Ջանում էինք որքան հնարավոր է լավ կազմակերպել հանդեսը:

Դպրոցի դահլիճում շարունակ եռուզեռ էր:

Ահա եկավ հանդիսավոր օրը:

Դահլիճը ամբողջությամբ թաղվել էր կանաչի մեջ և մի փոքրիկ, հեքիաթային աշխարհ էր հիշեցնում, ուր երգում էին թռչունները, վանդակում ուրախ ցատկոտում նապաստակները: Մյուս անկյունում ակվարիումի մեջ լողում էին ձկները:

Մենք՝ պատանի բնասերներս, լույս էինք ընծայել պատի թերթերի հատուկ համարներ, կազմել թեմատիկ ալբոմներ, որոնք պատմում էին կենդանական և բուսական աշխարհների մասին:

Պատանի բնասերների «կանաչ պարեկ» խմբակի անդամները կրում էին կանաչ տարբերանշաններ:

6-րդ դասարանի աշակերտները հրաժեշտ տվեցին բուսաբանության դասագրքին: Նրանք հանդիսավորությամբ բեմ բարձրացան՝ ձեռքերին տարբեր բուսատեսակներ, իսկ առջևի երկու աշակերտները տանում էին բուսաբանության դասագիրքը: Աշակերտները հանդեսում պատմեցին բույսերի օգտակարության առանձնահատկությունների մասին, արտասանեցին ոտանավորներ:

Հանդեսի 2-րդ մասը նվիրված էր կենդանաբանությանը: Այս անգամ մենք՝ 7-րդ դասարանցիներս, պատմեցինք բնության պահպանության վերաբերյալ կուսակցության ու կառավարության ընդունած կարևոր որոշումների, արգելավայրերի մասին:

Հանդեսը ոչ միայն առարկայական գիտելիքների ստուգատես էր, այլ նաև բնության յուրատեսակ մի գովք, նրա հանդեպ սիրո և հոգատարության կոչ:

*ՀԱՍՄԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

*Սևանի № 2 դպրոց, 7-րդ դասարան*





# ԴԻՄԱԿԱՀԱՆԴԵՍ ԱՆՏԱՌՈՒՄ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Հանդես է, հանդես անտառում այսօր
Իրարանցում է և ուրախություն,
Գալիս է արջը դիմակով ոզնու,
Մկան դիմակով գալիս է կատուն:

Իրար ետևից առյուծ ու հովազ
Օրոր-շորորով մտնում են բացատ,
Հագել են նրանք սագերի դիմակ
Եվ սագերի պես ճչում են ազատ:

Արջի դիմակով փոքրիկ մի եղնիկ
Խփում է ծնծղա ու պար է գալիս,







Իսկ ավանակը դիմակով փղի.
Նրա շուրերին ջուր է շաղ տալիս:

Փետուրը նախշուն, օրոր ու շորոր
Աքլորն է, տեսեք, մտնում ասպարեզ,
Բայց դա աքլոր չէ, այլ դիմակավոր
Եվ երկարապոչ փափկամազ աղվես:

Թռչուններն իրենց նվագախմբով
Նվագում են վալս և մազուրկաներ
Եվ իրար գրկած պտտվում են գոհ
Գայլեր ու սագեր, արջ ու կրիաներ:

Ուրախ հանդես է և իրարանցում,
Մուկը քաշում է առյուծի բաշից,
Բադն է կտուցով վագրին հալածում,
Եվ օձն է կանչում պոչերին ճաշի:

Ուրախ հանդես է, սակայն մեկուսի
Ծաղարն է նստել դիմակով բուի
Եվ միտք է անում ձեռքը ճակատին,
Եվ միտք է անում աչքը բացատին:

Այդ ինչպես է, որ փոխվեց ամեն ինչ.
Գայլը եղնիկին էլ չի հոշոտում,
Կուղբը առյուծին ասում է երինջ,
Եվ այծն է արջի ականջը քաշում:

Եվ միտք է անում ձեռքը ճակատին,
Եվ միտք է անում աչքը բացատին.
Դիմակահանդես, դիմակահանդես,
Վաղն է՞լ դու այսպես կշարունակվես:





Հայոց լեզվի և գրականության ուսուցիչ, բանահավաք ՄՈՒՇԵՂ ՀԱԿՈԲՅԱՆԸ Լոռվա գյուղերում երկար տարիներ շրջել և գրի է առել հայ ժողովրդական բազմաթիվ հեքիաթներ, զրույցներ, զվարճախոսություններ և ջանգյուլումներ: Նրա հավաքած նյութերի մեծ մասը տպագրվել է տարբեր տարիներին լույս տեսած բանահյուսական ժողովածուներում և «Հայ ժողովրդական հեքիաթների» 8-րդ հատորում:

Նա մեր խմբագրությանն է տրամադրել իր հավաքած նյութերից մի նոր շարք, որը և տպագրում ենք այս համարից սկսած:

# Մխիթար

Հայաստան աշխարհում կար մի աշխարհահռչակ բժիշկ, անունը՝ Մխիթար: Նա կին ու երեխաներ չուներ, ընտանեկան հոգսի տակ չէր մտել, որպեսզի ազատ լինի, շրջի ամենուր, որտեղ հիվանդ կա՝ բուժի, որտեղ աղքատ կա՝ օգնի:

Մի օր սովորականի պես ճանապարհ ընկած գնում էր: Ճանապարհին նրան ընկերացավ տնից-տեղից փախած մի ծույլ մարդ, որ իր ասելով՝ գնում էր արդարություն փնտրելու:

Շատ էին գնացել, թե քիչ, երկուսն էլ հոգնել էին և սովել: Մի անտառի բացատում, սառնորակ աղբյուրի մոտ Մխիթարն առաջարկեց.

— Էսպես սոված շարունակել չենք կարող մեր ճանապարհը: Աջ ու ձախ նապաստակներ են վխտում, մեկը որսանք, խորովենք, ուտենք, ուժ հավաքենք:

— Լավ ասացիր, եղբայր,— իսկույն համաձայնեց մարդը,— որսանք:

Մխիթարը մի նապաստակ բռնեց ու տվեց նրան:

— Դե, քեզ տեսնեմ,— ասաց,— արագ մաշկիր, խորովածի միս արա, ես էլ չոր փայտ հավաքեմ, կրակ անեմ, խորովենք:

Մարդը գործի անցավ, Մխիթարն էլ չոր փայտ հավաքեց, կրակը վառեց: Երբ կրակն արդեն բորբոքվել էր, Մխիթարն ասաց.

# Հերացի

— Տուր նապաստակի լյարդը, սիրտը, թոքերն ու երիկամները՝ խորովենք ուտենք, բերաններիս ջուրը հավաքենք, մինչև պատրաստես խորովածացուն:

— Նապաստակն էդ բաները չուներ,— ասաց մարդը:

Մխիթարը նայեց նրան ու ծիծաղեց:

— Ինչո՞ւ ես ծիծաղում,— վիրավորված ձևացավ նա,— չունի՛. եթե չես հավատում, եկ տես ու հավատա՛:

Մխիթարը մոտեցավ, տեսավ, որ ոչ լյարդ կա, ոչ սիրտ, ոչ թոքեր, ոչ էլ երիկամներ: Հասկացավ, որ նա չի դիմացել սովածությանը, հում-հում կերել է: Նորից ծիծաղեց:

— Էդպիսի բան չի կարող լինել. կերե՞լ ես՝ լավ ես արել, ես միայն հարցնում եմ՝ հում-հում ո՞նց կերար:

— Վա՛հ,— ձայնը բարձրացրեց ծույլը,— ինչ անհավատ մարդու եմ պատահել, ա՛յ մարդ, չի՛ ունեցել, ես որտեղի՞ց ուտեի:

Մխիթարը նորից ծիծաղեց և լռեց: Նապաստակի միսը խորովեցին, կերան, սառն աղբյուրից էլ ջուր խմեցին, հանգստացան և շարունակեցին ճանապարհը:

Հասան մի նշանավոր իշխանի ամրոցի: Հանդիպեցին մի ծերունու և Մխիթարը հարգանքով ողջունեց:

— Բարո՛վ եկաք, բարին ընդ ձեզ, ճամփորդ մարդիկ,— պատասխանեց ծերունին,— երանի թե մեկնումեկդ բժիշկ լինեք, փրկեք մեր իշխանի դըստեր կյանքը:

Հայտնեցին իշխանին, որ բժիշկ է եկել և ուզում է տեսնել հիվանդին: Դղյակում իրարով անցան: Ո՞վ պետք է լինի էդ բժիշկը: Իշխանն ընդառաջ եկավ:

— Ես բժիշկ Մխիթարն եմ, իշխան, թույլ տուր տեսնել հիվանդին:

Երբ մտան հիվանդի սենյակը, բըժիշկը զննեց գիտակցությունը գրեթե կորցրած հիվանդին, իսկույն համապատասխան կարգադրություններ արավ, հետո բոլորին դուրս հրավիրեց՝ բացի ծույլ մարդուց: Հագավ սպիտակ խալաթ, մեկն էլ տվեց նրան: «Թող կարծեն, թե օգնականս է»,— մտածեց նա: Աղջկա հիվանդությունը պարզ էր բժշկին: Արագ լվաց ձեռքերը, հանեց համապատասխան դեղորայքը, որ իր հետ միշտ ուներ, նախապատրաստեց և կտրեց աղջկա աջ երիկամի ուղղությամբ: Հեռացրեց արդեն շարքից դուրս եկած և սևացած երիկամը, նետեց մի կողմ, դեղերով համապատասխան լվացումներ արավ և վերքը նորից փակեց: Ծույլն ականապիշ նայում էր, թե ինչ է անում բժիշկը: «Ինչ հեշտ բան է բժշկությունը,— մտածում էր նա:— Եվ տես, թե հիմա ինչքան փող կաշխատի...»

Բժիշկը հետևում էր հիվանդի սրտի աշխատանքին ու շնչառությանը: Ձեռք առավ նաև ուրիշ միջոցներ, և վերջապես հիվանդը բացեց աչքերը:

Ուրախ լուրը տարածվեց, և ամենքն ուզում էին իրենց երախտագիտությունը հայտնել փրկարար բժշկին:

Իշխանը խնջույքի սեղան բացեց: Բոլորի ուշադրության կենտրոնը բժիշկն էր, իսկ նա ճանապարհից, վիրահատական նուրբ ու լարված աշխատանքից սաստիկ հոգնել էր, շատ քիչ բան կերավ և խնդրեց, որ իրեն տեղ հատկացնեն հանգստանալու: Մինչդեռ իր ընկերը մաքրազարդում էր առատ սեղանը...

Բժիշկ Մխիթար Հերացին մի ամիս մնաց դղյակում, մինչև լրիվ ապաքինվեց իշխանի գեղեցկուհի դուստրը: Այդ ընթացքում դղյակում և շրջապատի շեներում որքան հիվանդ կար, բոլորին բուժեց ու ոչ մեկից դրամ չվերցրեց: Դա շատ էր զարմացնում նրա ծույլ ընկերոջը, բայց արտահայտվել չէր կարող:

— Դե, իշխան,— մի օր ասաց բժիշկը,— ես իմ գործը վերջացրի, մնաք բարով:

— Բժիշկ,— ասաց իշխանը,— քեզ քո քաշով մեկ ոսկի պիտի տամ: Դու վերադարձրիր ինձ համար ամենաթանկ էակի, իմ սիրելի դստեր կյանքը...

— Իշխան,— ընդհատեց նրան բժիշկը,— երբ ես հաղթում եմ մահին, վերադարձնում եմ մարդու կյանքը, դա իմ ամենամեծ վարձատրությունն է և գերագույն հաճույքը, ես ապաքինման համար փող չեմ վերցնում:

Այդ ժամանակ նրա ընկերը, որ աչքերը չռել էր իշխանի խոստացած ոսկու համար ու հանկարծ լսեց բժշկի



մերժումը, էլ չհամբերեց և տրորեց բըժիշկ Մխիթարի ոտքը: Բժիշկը խեթ նայեց նրան:

— Բժի՛շկ, մե՛ծ բժշկապետ,— ասաց իշխանը,— եթե ձեզ երախտահատույց չլինեմ, ինձ սաստիկ վատ կզգամ:

— Այդ դեպքում ինձ հատկացնելիքը տվեք աղքատներին ու բարի աչքով նայեցեք ձեզ ենթակա ժողովուրդին:

Իշխանը մտքի մեջ ընկավ:

— Էդ դեպքում,— ասաց նա,— ոտքով մի՛ գնացեք, սպասեցե՛ք:

Եվ կարգադրեց երկու թամբած նըժույգ բերել:

— Այ, սա ուրիշ բան,— ասաց Մըխիթարը,— ձիով կգնանք:

Երբ արդեն բավական ճանապարհ էին կտրել, նորից հանդիպեցին մի սառնորակ աղբյուրի: Իջան ձիերից, ջուր խմեցին, հաց կերան, հանգստացան, և բժիշկն ասաց իր ուղեկցին.

— Հո տեսար ու համոզվեցիր, որ ես բժիշկ եմ: Դե իմացիր. չկա կաթնասուն կենդանի արարած, որ չունենա սիրտ, թոք, լյարդ ու երիկամներ: Ասա՛, խոստովանի՛ր, ինչպե՞ս հում-հում կուլ տըվիր նապաստակի սիրտը, թոքերը, լյարդն ու երիկամները:

— Վայ, վայ, վա՜յ,— ձայնը բարձրացրեց համառ ընկերը,— այ մարդ, դու ի՞նչ անհավատ մարդ ես, էդ մի նապաստակն էլ սիրտ, թոք, լյարդ ու երիկամ չուներ, ես կուլ չեմ տվել, ինչո՞ւ չես հավատում:

— Դե լա՛վ,— ասաց Մխիթարը,— մենք իրար ընկեր ու ուղեկից լինել չենք կարող. նստիր քո ձին ու հեռացիր:

Մխիթարը երկար սպասեց, մինչև նա հեռացավ, հետո ինքն էլ հեծավ իր ձին ու դանդաղ ընթացքով ճանապարհ ընկավ:

Հաջորդ օրը, երբ արևը կիսել էր երկնակամարը, ծույլ մարդը հասավ թագավորանիստ քաղաքը: Երբ քիչ առաջ գնաց, հանդիպեց մի բազմության: Մարդիկ հավաքվել էին թագավորական ազդերի մի տախտակի առաջ, և մի մարդ բարձրաձայն ինչ-որ բան էր կարդում: Անգրագետ ծույլը ևս մոտեցավ, ուզեց բան հասկանալ, բայց չհասկացավ: Մարդիկ լսել էին և ափսոսում էին:

— Ի՞նչ է պատահել, ինչո՞ւ եք ափսոսում, ի՞նչ էր կարդում էդ մարդը,— հարցրեց մեկին:

— Բա չե՞ս իմացել, մարդ աստծո, մեծ դժբախտություն է պատահել,— պատասխանեց նա,— թագաժառանգը մահամերձ է, ոչ մի բժիշկ օգնել չի կարողանում: Ասում են կա մի լավ բըժիշկ՝ Մխիթար է անունը: Թագավորը դեսպաններ է ճամփել, բայց չեն գտել: Ծարը կտրած թագավորը հայտարարություն է գրել, որ ով կարողանա փըրկել իր միամորիկ որդուն, նրան իր կշռով մեկ ոսկի կտա, հակառակ դեպքում՝ կախաղան կհանի քաղաքի հրապարակում:

Ծույլի աչքերը փայլատակեցին, երբ լսեց իր կշռով մեկ փայլուն ոսկու մասին:

— Ես կբուժեմ,— ասաց նա,— ես կբուժեմ թագաժառանգին, ինձ տարեք թագավորի մոտ:

Մարդիկ իրարով անցան. վերջապես գտնվեց մի մարդ, որը կբուժի թագաժառանգին: Մի քանի մարդ սրա առաջն ընկած, տարան թագավորի մոտ:

— Թագավորն ապրած կենա,— գըլուխ տվեց ծույլը,— ես կբուժեմ թագաժառանգին:

Թագավորն ուրախացավ, հետո ոտից գլուխ չափեց նրան և ասաց.

— Իսկ գիտե՞ս պայմանը. եթե բուժեցիր, քո կշռով մեկ ոսկի կստանաս, եթե ոչ՝ քաղաքի հրապարակում կախաղան եմ հանելու. սա է իմ վճիռը:

— Գիտեմ, գիտեմ,— ասաց,— ինձ տարեք հիվանդի մոտ:

Մոտն էր մնացել բժշկի տված ըսպիտակ խալաթը: Իսկույն հագավ, թագավորի առաջնորդությամբ գնաց հիվանդի սենյակը: Բոլորին դուրս հրավիրեց, ինքն էլ բժշկի պես լվաց ձեռքերը, գրպանից հանեց դանակը, աջ կողմից կտրեց որովայնի մի հատվածը, գտավ երիկամը, կտրեց և մի կողմ շպրտեց, ինչպես որ բժիշկն էր վարվել իշխանի դստեր հետ, հետո նորից կարեց իր կտրածը:

Հիվանդի դրությունը ծանրացավ, կորցրեց գիտակցությունը: Թագավորը երբ իմացավ, արյունը գլուխը տվեց: Իսկույն կարգադրեց՝ տանել քաղաքի հրապարակ և կախաղան հանել:

Արևը թեքվել էր դեպի մայրամուտ, երբ Մխիթար Հերացին էլ հասավ քաղաք: Անցավ մեկ-երկու փողոց, բայց ոչ մի մարդու չհանդիպեց ու զարմացավ: Մի շենքի մուտքի մոտ նստած էր մի ծերունի:

— Բարև, հայրիկ,— ասաց Մխիթարը:

— Գալդ բարի, որդի, բարին արեվիդ,— պատասխանեց ծերունին:

— Հայրիկ, ձեր շեն քաղաքի փողոցներով անցնում եմ և ոչ մի մարդու չեմ հանդիպում, ասա ինձ, ի՞նչ է պատահել:

— Որդի,— ասաց ծերունին,— եթե ես ծեր չլինեի, ինձ էլ չէիր հանդիպի: Մեծ, շատ մեծ դժբախտություն է պատահել. մեր թագավորի միամորիկ որ-





դին ծանր հիվանդ է։ Թագավորը խոստացել էր, ով որ բուժի որդուն, նրան կշռով մեկ ոսկի կտա, իսկ ում ձեռքի տակ որդին ավելի վատացավ, նրան կախաղան կհանի քաղաքի հրապարակում։ Մի բախտախնդիր մարդ հանձն էր առել, որ կբուժի, բայց հիվանդի վիճակն ավելի է վատացել։ Հիմա հրապարակում նրան կախելու են և բոլորը գնացել են տեսնելու։

Մխիթար Հերացին շտապեց հրապարակ։ Տեսավ կախաղանի սյունի մոտ իր ծանոթ ծույլին, որը գունաթափ, շփոթված, դես-դեն էր նայում։ Երբ պատրաստվում էին թոկը վիզը գցել, Մխիթարն ասաց.

— Խոստովանիր, որ դու հում-հում կուլ տվեցիր նապաստակի սիրտը, թոքը, լյարդն ու երիկամները և ես քեզ կազատեմ կախաղանից։

— Այ մարդ, էլի դու էն անհավատն ես. ասացի, որ նապաստակը սիրտ, թոք, լյարդ ու երիկամ չի ունեցել, հավատա ինձ, ազատել տուր կախաղանից, սրանից էլ նեղ տեղ չի լինի։

Թագավորի մարդիկ թոկը գցեցին ծույլի վիզը, բայց Մխիթարը խղճաց, չկարողացավ հանդուրժել, որ աչքի առաջ մարդ է մեռնելու։

— Թագավոր,— ասաց Մխիթարը,— ազատիր էս մարդուն, ես կփրկեմ քո տղայի կյանքը, եթե մինչև մեր հասնելը մահացած չլինի։

— Բայց իմացիր, մարդ, եթե չփրկեցիր, դու էլ հետը կախվելու ես։

— Համաձայն եմ, թագավոր, ազատիր։

— Ոչ,— ասաց թագավորը,— թող թոկը վզին մնա. եթե կփրկես իմ տղային, ես էլ կփրկեմ և՛ նրան, և՛ քեզ։ Եթե ոչ՝ երկուսիդ միասին կհանեմ

կախաղան, գուցե դա մի քիչ թեթևացնի իմ վիշտը:

Թագավորը կառք նստեց, Մխիթարի հետ գնացին:

— Ո՞վ ես դու, այ մարդ, որ նրա պատճառով քո կյանքն էլ վտանգի ես ենթարկում, մի՞թե նա արժանի է դրան,— ճանապարհին հարցրեց թագավորը:

— Նա անարժան մարդ է, թագավոր, ես գիտեմ, բայց ես մահը տանել չեմ կարող, ես միշտ կռվել եմ մահվան դեմ. ես բժիշկ եմ, ինձ ասում են Մխիթար Հերացի, գուցե լսած լինես:

— Մխիթար Հերացի՞,— աղաղակեց թագավորը,— մարդ աստծո, բժիշկ, քեզ շատ եմ փնտրել, բայց դու քո ոտքով ես եկել, փրկիր զավակիս կյանքը, աղաչում եմ քեզ...

Բժիշկը հիվանդին գտավ չափազանց ծանր վիճակում, մահվան քրտինքն էր պատել նրա գեղեցիկ ու լայն ճակատը: Հանկարծ նկատեց, որ հատակին, պատի տակ ընկած է մի առողջ երիկամ: Ամեն ինչ հասկացավ: Վերմակը ետ քաշեց ու տեսավ, որ աջ կողմից կտրած ու էլի կարած է: Կարերը քանդեց, բացեց վերքը, համապատասխան դեղերով լվացումներ կատարեց, առողջ երիկամը տեղադրեց, դրեց համապատասխան սպեղանի: Հետո հայտնաբերեց իսկական հիվանդությունը և դարձյալ՝ համապատասխան բուժումներ արավ: Կամաց-կամաց կանոնավորվեց հիվանդի զարկերակը: Մի երկու ժամ հետո հիվանդը բացեց աչքերը. նա ուշքի էր գալիս: Թագավորը երբ տեսավ, ուրախությունից քիչ մնաց ուշաթափվեր: Իսկույն հրամայեց՝ դատապարտյալին ազատեն և բերեն պալատ:

Քառասուն օր Մխիթարը մնաց պալատում և բուժեց թագաժառանգին: Նրանից անբաժան, նրա շուրջն էր պտտվում ծույլը: Մխիթար Հերացին էդ օրերին պարապ չէր նստել և միայն թագաժառանգով չէր զբաղվում: Քաղաքում որքան հիվանդ կար, բոլորին օգնության հասավ: Հատկապես շատ էին աղքատ հիվանդները: Ոչ միայն բուժում, այլև ապրուստի միջոցներ էր տրամադրում, օգնում նրանց ընտանիքներին:

Քառասուն օր հետո հայտնեց թագավորին, որ ինքն այլևս անելիք չունի, մեկնում է:

— Դե, ուրեմն, հարգելի բժիշկ, ես իմ խոսքի տերն եմ, հիմա կստանաս քո կշռով մեկ ոսկին, և ձեզ բարի ճանապարհ:

— Ինչպես արդեն գիտես, թագավոր, ես հիվանդի բուժման համար վարձ չեմ վերցնում, շնորհակալ եմ, լավ թագաժառանգը ժողովրդինն է: Ինձ համար մեծ վարձ է, եթե մեր ապագա թագավորը ժողովրդի սրտովը լինի, նրան նայի՝ ինչպես հայրն իր զավակներին...

Ծույլ մարդը նորից անհանգստացավ, նորից ուզեց բժշկի ոտքը տրորել, բայց չհամարձակվեց: Սակայն թագավորը չթողեց բժշկին, որ շարունակի:

— Դու լավ ես անում, բժիշկ,— ասաց,— որ ձրի ես բուժում հասարակ և, մանավանդ, աղքատ ժողովրդին: Իսկ, չէ՞ որ ես թագավոր եմ. դու թույլ ես տալիս, որ ես իմ խոսքը գետին գցեմ: Ես խոսք եմ տվել, թագավորի խոսք, իսկ թագավորի խոսքն օրենք է, ես պետք է կատարեմ խոսքս: Դու կստանաս ոսկին, իսկ թե ի՞նչ կանես՝ դա քո գործն է:

Մխիթար Հերացին չվիճեց և չհակադրվեց թագավորի կամքին:

Մի մեծ խուրջին լցրին ոսկով, դըրին Մխիթարի ձիու թամբին, բարի ճանապարհ մաղթեցին և ուղեկցեցին մինչև քաղաքի ծայրը: Մխիթարն ու ծույլը, որ արդարություն էր որոնում, շարունակեցին ճանապարհը:

Մխիթարն ասաց.

— Մի զուլալ աղբյուրի մոտ իջնենք, ձիերն արածեն, մենք էլ հաց ուտենք, ջուր խմենք, հանգստանանք, նոր շարունակենք ճանապարհը:

Իջան, իջեցրին ոսկին, հաց կերան, հանգստացան:

— Դե հիմա բաժանենք ոսկին,— ասաց Մխիթարը:

Ծույլն ուրախությունից քիչ մնաց խելքը թռցներ:

Ծոր փռեցին կանաչ խոտերին: Իրենց հետ ունեին մի ջրաթաս: Մխիթարը ձեռքն առավ թասը, լցրեց ոսկով և դատարկեց շորի մի անկյունում: Մի թաս էլ լցրեց և շուռ տվեց շորի մյուս անկյունում, երրորդ թասը՝ երրորդ անկյունում և ամեն անգամ ասում էր.

— Էս ինձ, էս քեզ, էս էլ նրան: Էս ինձ, էս քեզ, էս էլ նրան:

Երբ խուրջինի մի հակը դատարկվեց, ծույլն էլ չհամբերեց:

— Բժիշկ, խնդրում եմ ասես՝ էդ մեկը քեզ, հասկանալի է, էս մեկն էլ ինձ՝ հասկանալի է, իսկ ո՞վ է «նա», ո՞ւմ է պատկանում երրորդը, դա չեմ հասկանում:

— Երրորդը պատկանում է նրան, ով որ հում-հում կուլ է տվել նապաստակի սիրտը, թոքերը, լյարդն ու երիկամները:

Ծույլը տեղից վեր թռավ և քիչ մընաց գրկեր բժշկին.

— Ես... ես եմ հում-հում կուլ տվել նապաստակի սիրտը, թոքերը, լյարդն ու երիկամները, սիրելի բժիշկ, ես եմ կուլ տվել:

— Ախ հա՛, դո՞ւ ես կուլ տվել, արդարություն փնտրող մարդ, բա մինչև հիմա ինչո՞ւ էիր ժխտում, ուզում էիր հավատացնել, թե նապաստակը սիրտ, թոքեր, լյարդ ու երիկամներ չունի. արդեն գտա՞ր «արդարությունը»: Ահա՛ աշխատանքի ձեռք բերած ոսկին է քո «արդարությունը»: Դե գնա, սրիկա, քեզ նմաններից պետք է մաքրել աշխարհը: Դու արժանի՞ էիր, որ ես քեզ ազատեցի կախաղանից: Գնա՛, հեռացի՛ր:

Էնպես էր բարկացել բժիշկը, որ ծույլի մարմնով մեկ դող անցավ:

— Նստիր ձիդ ու աչքիցս չքվիր...

Ծույլը գլխիկոր հեռացավ:

Ասում են, որ Մխիթար Հերացին շարունակել է շրջել երկրեերկիր, բուժել հազարավոր մարդկանց և ոսկին էլ բաժանել է աղքատներին: Թող հուր-հավիտյան ապրի նրա հիշատակն ու անունը:

*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# ՄՀԵՐ ՄԿՐՏՉՅԱՆ

...17 տարեկան էր, երբ ընդունվեց Լենինականի դրամատիկ թատրոն: Մինչ այդ եղել էր էլեկտրիկի աշակերտ, աշխատել Լենինականի տեքստիլ կոմբինատում և մի քանի տարի խաղացել թատերական ինքնագործ խմբում:

Մի անգամ նրան Խլեստակովի դերում տեսավ նշանավոր թատերական ռեժիսոր Լևոն Քալանթարը և... տաղանդավոր պատանու ճակատագիրը որոշվեց: Շուտով նա մեկնեց Երևան՝ սովորելու գեղարվեստաթատերական ինստիտուտում: Այստեղ նույնպես Մհերի բախտը բերեց. նրան վիճակվեց լինել ՍՍՀՄ ժողովրդական դերասան Վաղարշ Վաղարշյանի խմբում, աճեց նրա հմուտ ձեռքի տակ:

Ինստիտուտն ավարտելուն պես Մհեր Մկրտչյանի առջև իր դռները բացեց մայրաքաղաքի Գ. Սունդուկյանի անվան ակադեմիական թատրոնը, ուր մինչև այժմ էլ աշխատում է նա: Յուրաքանչյուր հանդիպում հանրաճանաչ ու սիրված դերասանի և կինոդերասանի հետ բեմում կամ կինոէկրանների վրա, մեծ ուրախություն, մեծ տոն է հանդիսատեսի համար: Մեր Միության ու արտասահմանյան տարբեր էկրաններից հանդիսատեսի հետ զրուցում են մըկրտչյանական սրտաբաց ու մտերմիկ, ծիծաղաշարժ ու թախծոտ կերպարները:

Տաղանդավոր դերասանը նաև տաղանդավոր ռեժիսոր է: Վերջերս նրա բեմադրած Մ. Գորկու «Հատակում» պիեսը մեծ ջերմությամբ ընդունվեց հանդիսատեսի կողմից:

Այն ներկայացումներն ու կինոնկարները, որոնց մեջ Մհեր Մկրտչյանն է խաղում, եթե անգամ արդեն անգիր գիտենք, պատրաստ ենք կրկին հափշտակությամբ դիտել: Նրա կերպարները կախարդիչ ուժ, ընդգըծված ազգային կոլորիտ, համ ու հոտ ունեն, մշտապես թարմ են, գրավիչ, գունագեղ: Իր անկաշկանդ խաղով նա վերացնում է ներկայացման, կինոնկարի և կյանքի միջև եղած սահմանները:

ՍՍՀՄ պետական մրըցանակի դափնեկիր, Հայաստանի և Վրաստանի ժողովրդական դերասան Մհեր Մկրտչյանին ըստեղծագործական դեռ երկար ու բեղմնավոր ճանապարհ է սպասում:

Շնորհակալություն նըրան իր արվեստի անհամար պատանի երկրպագուներից և հաջողություններ իր անցնելիք ճանապարհին:

Լուսանկարը
[illegible]

# ՄԱՐՏԻՐՈՍ ԵՐԶՆԿԱՑՈՒ ՃԱՄՓՈՐԴՈՒԹՅՈՒՆԸ

**Մայրաքաղաքի №177 դպրոցի 6-րդ դասարանի մի խումբ աշակերտներ խմբագրությանն են դիմել հետևյալ հարցով. «Արդյոք ճի՞շտ է, որ Կոլումբոսի՝ դեպի Հնդկաստան կատարած ճամփորդությանը մասնակցել է հայազգի մի մարդ»:**

**Խմբագրության խնդրանքով հարցին պատասխանում է ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի աշխատակից ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶՅԱՆԸ:**

Եվրոպական երկրներում շրջագայած առաջին նշանավոր հայը Մարտիրոս եպիսկոպոս Երզնկացին է, որը 1489—1496 թթ. ճամփորդել է Իտալիայում, Շվեյցարիայում, Գերմանիայում, Ֆլանդրիայում (Հոլանդիա), Անգլիայում, Ֆրանսիայում և Իսպանիայում, հակիրճ գրի առնելով ճամփորդական տպավորությունները: Այս ուղեգրության մի ձեռագիր օրինակ պահվում է Մ. Մաշտոցի անվան մատենադարանում:

Հեղինակի ուղեգրությունից իմանում ենք, որ նա, որպես մոլեռանդ քրիստոնյա, բուռն ցանկություն է ունեցել տեսնելու և երկրպագելու Եվրոպայի տարբեր մասերում գտնվող առաքյալների հիշատակին կառուցված եկեղեցիները, զանազան սրբերի ու Քրիստոսի «իրեղեն-ապացույցները»: Չնայած հեղինակի այս պարզ ցուցումին, կարծիք կա, ըստ որի Մարտիրոս Երզընկացին «զսելով, որ Քրիստափոր Կոլումբոսը գտել է Ամերիկան, ինքն էլ ուզեց նոր աշխարհներ գտնել: Նա դուրս եկավ Հայաստանից, անցավ ամբողջ Եվրոպան և Սպանիայի վրայով հասավ Ատլանտյան օվկիանոսի եզերքը»: Այս խոսքերը պատկանում են Հ. Անառյանին: Այս հարցին անդրադարձել են վաստակաշատ հայագետներ Լ. Խաչիկյանը, Վ. Հակոբյանը և վերջնականապես ապացուցել, որ վերոհիշյալ կարծիքը սխալ է և գիտության հետ առնչություն չունի:

Նախ, Մարտիրոս Երզնկացու ճանապարհորդությունը սկսվել է Կոլումբոսի կողմից Ամերիկան հայտնագործելուց երեք տարի առաջ՝ 1489 թ.: Երզընկացին չի մասնակցել նաև Կոլումբոսի երկրորդ ճանապարհորդությանը, որովհետև նա պարզապես Եվրոպայից դուրս չի գնացել, իսկ աշխարհագրական հայտնագործությունը Եվրոպայում

չէր կատարվելու: Ծփոթմունքը ծագում է Մ. Երզնկացու ուղեգրության մեջ հիշատակված մի դեպքից, ըստ որի, Բիսկայում գտնվելիս, Մ. Երզնկացին լսում է, որ մեկնող նավ կա և խնդրում է նավապետին իրեն ևս վերցնել, քանի որ այլևս ուժ չունի ցամաքով ետ դառնալու:

Նավապետը նրան պատասխանում է , որ սա հասարակ նավ չէ, այլ «Ես ի համատարած ծովուն կերթամ... որ բոլորենք զաշխարհս... » Այս խոսքերից ենթադրվել է, որ նավը մեկնում է շուրջերկրյա ճանապարհորդության: Իրականում «բոլորենք զաշխարհս» արտահայտությունը շուրջերկրյա ճանապարհորդության իմաստ չի պարունակում, քանի որ, երբ Մարտիրոս Երզընկացին Բիսկայից նավարկելով հասնում է Կադիքս, այսինքն շրջում է Ատլանտյան օվկիանոսի իսպանական ափերը, նորից գրում է. «Եվ ԿԷ (67) օր զաշխարհս բոլորեցաք»: Այսպիսով, իրականում «զաշխարհս բոլորեցաք»-ը վերաբերում է իսպանական ափերը շրջելուն և ոչ թե շուրջերկրյա ճանապարհորդությանը: Համենայն դեպս այդ նավը միայն շրջել է Ատլանտյան օվկիանոսի Պիրենյան թերակղզու ափերով:

Հետևաբար Մարտիրոս Երզնկացու՝ Քրիստափոր Կոլումբոսի արշավախըմբին մասնակից լինելու մասին կարծիքը ճիշտ չէ և արդյունք է հեղինակի ուղեգրության տեքստի որոշ հատվածների սխալ ըմբռնման: Այսուհանդերձ, Մարտիրոս Երզնկացու դերն ու նշանակությունը սրանով չի նսեմանում, քանի որ նրա թողած ուղեգրությունը մեծ չափով ավելացնում է մեր գիտելիքները միջնադարյան Եվրոպայի մասին:

Վերջում ավելացնենք, որ Մարտիրոս Երզնկացու ուղեգրությունը հիմք է հանդիսացել Աղասի Այվազյանին, գրելու «Սինյոր Մարտիրոս» վիպակը:






# ԹՈՂ ԼԻՆԻ ՄԻՇՏ ԱՐԵՎԸ

Այդ օրը դասերից հետո անծանոթ մեկը թե մտներ Երևանի № 114 դպրոցի դահլիճ, կշփոթվեր՝ տեսնելով գույնզգույն փողկապներով, տարբեր երկրների պիոներական կազմակերպությունները խորհրդանշող կրծքանշաններով տղաների ու աղջիկների: «Երևի հյուրեր են»,— կմտածեր նա, բայց քիչ անց զարմանքով կիմանար, որ ոչ թե հյուրեր, այլ 4-րդ դասարանի՝ Նատալյա Կուրչենկոյի անվան ջոկատի հերթական հավաքույթներից մեկն է, այս անգամ՝ «Բարեկամությունը սահման չունի» նշանաբանով:

Հավաքույթը արտասահմանյան մանկական կազմակերպությունների մասին էր, այդ կազմակերպությունների ստեղծման, նրանց անվանումների, պիոներական թերթերի ու ամսագրերի, տարբեր գույնի վզկապների նշանակության և իմաստի մասին: Օրինակ, պիոներներն իմացան, որ Վիետնամում իրենց հասակակիցները Վիետնամի Սոցիալիստական հանրապետության հիմնադիր Հո Շի Մինի անունով կոչվում են Հո Շի Մինի թոռնիկներ, Մոնղոլիայում՝ ազգային հեղափոխական առաջնորդ Սուխեբատորի անունով՝ սուխեբատորականներ, Հունգարիայում՝ Կիշդիբոշներ, որ նշանակում է՝ փոքրիկ թմբկահարներ և այլն: Իսկ Այծեմնիկը կրում էր Լեհաստանի պիոներների կրծքանշանը, որի վրա գրված էր «Ձուխայ», որ նշանակում է՝ «եղիր պատրաստ»:

Միրանուշը՝ Չեխոսլովակիայի պիոներներին խորհրդանշող փողկապ ու կրծքանշան էր կրում, Աննան՝ Ռումինիայի, Արթուրը՝ Վիետնամի, Արտակը՝ Մոնղոլիայի, Նաիրան՝ ԳԴՀ-ի, Լիլիթը՝ Հունգարիայի և այլն:

Պիոներներից ամեն մեկը պատմում էր այն երկրի մասին, որտեղ ապրող իր հասակակիցին էր խորհրդանշում:

Հավաքույթի ժամանակ պիոներները երգեցին «Խաղաղության աղավնի» և խաղաղությանն ու բարեկամությանը նվիրված այլ երգեր: Իսկ վերջում «Թող լինի միշտ արևը» երգով, ծափահարությունների տակ ավարտվեց հավաքույթը:

# ՀՈԿՎԱՐԸ

Դպրոցում թե փողոցում, որտեղ էլ որ հանդիպեն, Երևանի № 114 դպրոցի 3-րդ Ա դասարանի աշակերտները շրջապատում են ընկեր Անուշին ու իրար հերթ չտալով՝ հարցնում.

— Ընկեր Անուշ, ե՞րբ ենք ընդունվելու պիոներիայի շարքերը:

— Այսօր էլի ե՞նք հավաքվելու...

— Մենք պիոների բոլոր օրենքները գիտենք, ասե՞նք...

Ընկեր Անուշը՝ Անուշ Մակիչյանը, 7-րդ Ա դասարանի ջոկատի խորհրդի նախագահն է և, միաժամանակ, 3-րդ Ա դասարանի հոկվարը: Իր պարտականությունները բարեխղճորեն կատարելու հետ մեկտեղ, Անուշը սովորում է գերազանց գնահատականներով:

Չնայած պիոներներին մեկ պիոներական հանձնարարությունից ավելին չի տրվում և դժվար է ջոկխորհրդի նախագահի պարտականությունները զուգակցել հոկվարի պարտականություններին, սակայն Անուշը շատ խնդրեց ավագ ջոկատավարին. «Ինչ կլինի, ընկեր Կարինե, թույլ տվեք: Ես կհասցնեմ, ազ-

նիվ խոսք»։

Եվ ահա, 3-րդ Ա դասարանում ուսուցիչներից պակաս հեղինակություն չի վայելում հոգատար ջոկվարը։ Նա օգնում է թույլ սովորողներին, աշակերտներին սովորեցնում լինել ընկերասեր ու կարգապահ։ Եվ զարմանալի չէ, որ դասամիջոցներին 3-րդ Ա դասարանը ամենակարգապահն է դպրոցում, որովհետև նըրանց կողքին է նրանց մշտական հերթապահը՝ սիրելի ջոկվարը։

Այս օրերին 3-րդ Ա դասարանի աշակերտները՝ Կարինեն, Արմինեն, Աննան և մյուսները ջանասիրությամբ պատրաստվում են ընդունվելու պիոներիայի շարքերը։ Նրանք արդեն գիտեն պիոների օրենքները, պիոներական երդումը, մի քանի պիոներական երգեր, բանաստեղծություններ, կարմիր վզկապի «գաղտնիքները»։ Գիտեն նաև, թե պիոները ինչպես պետք է իրեն պահի փողոցում, տանը և դպրոցում։ Ընկեր Անուշն է սովորեցրել։

— Որոշել եմ մինչև դպրոցն ավարտելը մընալ այդ դասարանի հետ, — ասում է Անուշը,— երեխաների հետ այնպես եմ կապվել, որ թվում է առանց նրանց իմ կյանքում մի շատ կարևոր բան պակաս կլինի։

*ՄԽԻԹԱՐ ՈՍԿԱՆՅԱՆ*

## ՍՈՎՈՐԻՐ ԿԱՐԴԱԼ ԲՆՈՒԹՅԱՆ ԳԻՐՔԸ





# ԿԵՆԴԱՆԻՆԵՐԸ ՀՈՒՇՈՒՄ ԵՆ

Եթե արջերը աշնանը վաղ են քուն մտնում, նշան է, որ ձմեռը շուտ է ընկրկվելու և բավականին երկարատև ու դաժան է լինելու։ Եթե մինչև ուշ աշուն արջերը քուն չեն մտնում և անհոգ թափառում են անտառում, նշան է, որ ձմեռը ուշանալու է և բավականին մեղմ ու կարճատև է լինելու։ Նույնն է հուշում նաև գետնասկյուռների վարքը։

Անձրևի ստույգ նախանշան է երեկոյան խարույկի վերևում մեծ թվով միջատների հայտնվելը, որոնք պարսերով խաղում են օդում կամ խարույկի վրայով սլանում են այս ու այն կողմ։ Անձրևից առաջ մոծակները առանձնակի չարությամբ են հարձակվում մարդկանց վրա։ Մոտալուտ անձրևը զարմանալի ճշտությամբ կանխագուշակում



են նաև մրջյունները: Երբ նկատվում է, որ պարզ, արևոտ եղանակին մրջնանոցի շրջակայքում մրջյուններ չեն երևում, և կյանքը, կարծես, մարում է, մրջյունները ելումուտ չեն անում, ապա անխափ կարելի է եզրակացնել, որ ուր որ է անձրև է տեղալու և ամպրոպ է ճայթելու:

Եղանակը հեշտությամբ կարելի է կանխագուշակել նաև մեղուների վարքով: Եթե պարզ եղանակին մեղուները փեթակից հեռու չեն թռչում, ապա կարելի է եզրակացնել, որ շուտով անձրև է տեղալու: Եթե թեկուզ ամպամած եղանակի դեպքում, երբ մեզ թվում է, թե ուր որ է անձրև է տեղալու, բայց մեղուները վաղ առավոտից հեռու դաշտեր են թռչում նեկտար և ծաղկափոշի հավաքելու, կարելի է չկասկածել, որ անձրև չի լինելու և եղանակը շուտով կպարզվի: Երբ անձրևոտ ու մառախլապատ, խիստ ամպամած եղանակ է սպասվում, խեցգետինները գետակից ափ են դուրս գալիս: Եթե հաջորդ օրը պարզ, արևոտ եղանակ է լինելու, երեկոյան անսովոր ուժգնությամբ է հնչում ծղրիդների հոգեբուխ ու միապաղաղ երգը: Գորտերի բարձր կըռկըռոցը նույնպես լավ եղանակի նախանշան է:

Մարդիկ հնուց նկատել են, որ բուլդոգները մառախլապատ եղանակի նախօրյակին անտրամադիր են դառնում, հրաժարվում ամվելուց: Իսկ եթե լավ եղանակ է սպասվում, նրանք արտակարգ աշխուժանում են և հաճույքով են ընդունում մարդու կամ շների «խաղի հրավերը»: Ֆոքստերյերները (աղվեսաշներ) անձրևից առաջ սովորաբար գրգռված ոռնում են, քանդում հողը, քնում խիստ անհանգիստ:

Երբ ուժեղ մրրիկի դեպքում ծովի ալիքներում դելֆիններ են երևում, ապա ծովայինները անխափ գուշակում են, որ շուտով մրրիկը դադարելու և ծովը հանդարտվելու է:

Զարմանալի կապ գոյություն ունի մայիսյան բզեզների քանակի և երաշտի միջև: Վաղուց հայտնի է, որ այն տարիներին, երբ մեծ քանակությամբ մայիսյան բզեզներ են հայտնվում, դիտվում է ուժեղ ու երկարատև երաշտ:

Հյուսիսային երկրներում սովորություն կա սկյուռների հավաքած ձմռան պաշարի չափով գաղափար կազմել առաջիկա ձմռան երկարատևության և խստության մասին: Եթե այդ խելացի գազանիկը իր բույն-պահեստը գրեթե բերնեբերան լցնում է սնկով և ընկույզներով, կաղիններով ու տխիլներով, ապա կասկածից վեր է, որ ձմեռը դաժան ու երկարատև է լինելու: Եթե ըսկյուռիկը առանձնապես շատ պաշար չի կուտակում, պետք է ենթադրել, որ ձմեռը մեղմ և կարճատև կլինի:

Մարդիկ նկատել են, որ հաճախ գայլերը մոտենում են բնակավայրերին և գիշերները թախծալի ոռնում են: Դա համարվել է սառնամանիքների սաստկանալու նշան: Մարդիկ նույնպիսի եզրակացության են հանգել, երբ բնակավայրերի շրջակայքում մեծ քանակությամբ նապաստակներ են հայտնվել:

Ուժեղ սառնամանիքներ են սպասվում, երբ կատուները քնելիս «գունդ ու կծիկ» են դառնում, իսկ ձիերը կանգնած են քնում: Երբ ձին հաճույքով պառկում է ձյան վրա, ապա դա նշան է, որ եղանակները շուտով տաքանալու են: Հետաքրքիր է հատկապես կովերի վարքը. երբ ուժեղ սառնամանիքներ են ըսպասվում, այդ կենդանիները անընդհատ փփսում և փռշտում են: Հորդառատ անձրևից առաջ կովերը դնչերը վեր են բարձրացնում և ագահությամբ ներծծում խոնավ, թարմ օդը:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*

# Առեղծված, որ երկու հազար տարեկան է




Ատլանտիդայի առեղծվածը գիտնականներին զբաղեցնում է արդեն 2000 տարի։ Որտեղի՞ց է առաջացել այս լեգենդը։ Մեր թվագրությունից առաջ 4-րդ դարի սկզբին հին հունական փիլիսոփա Պլատոնը Ատլանտիդայի կենցաղը, պետական կառուցվածքն այնպես մանրամասն է նկարագրել, կարծես ինքն անձամբ եղել է այնտեղ։ Պլատոնը այս մասին կարդացել է իրենից 200 տարի առաջ ապրած հույն պետական գործիչ Սոլոնի նոթերից։ Սոլոնն էլ իր հերթին իբրև թե իր աչքերով կարդացել է եգիպտական պապիրուսներ, որոնց վրա գրված է եղել Ատլանտիդայի պատմությունը։

Մշտական վիճաբանություններ են գնում՝ իրականում գոյություն ունեցե՞լ է Ատլանտիդան, թե՞ այն մտացածին է։ Եվ եթե գոյություն է ունեցել, ապա որտե՞ղ է գտնվել, ե՞րբ և ինչի՞ց է կործանվել, ի՞նչ ժողովուրդներ են այդ երկրում ապրել։

«Ատլանտաբանությանը» 25 հազար կտոր գիրք և անթիվ-անհամար հոդվածներ են նվիրված։ Ատլանտիդան տեղադրել են և՛ Ազորյան կղզիների շրջանում, և՛ Կովկասում, և՛ Հարավային Ամերիկայում, և՛ Շվեդիայում, և՛ նույնիսկ Շպիցբերգեն կղզում։ Երկրի կործանման պատճառը համարել են և՛ երկրաշարժը, և՛ ջրհեղեղը, և՛ գիսաստղի անկումը։

Սակայն այս հիպոթեզներից ոչ մեկը մինչև օրս ապացուցված չէ։

Նոր փաստեր, նոր հայտնագործություններ են հարկավոր, որոնք վաղ թե ուշ երևան կգան։

Բոլորովին վերջերս նման մի հայտնագործություն կատարվեց։ Սովետական օվկիանոսաբանները Ջիբրալթարի նեղուցից փոքր-ինչ դեպի արևմուտք, այնտեղ, որտեղ հետազոտողների մեծամասնությունը տեղադրում է Ատլանտիդան, ստորջրյա ավտոմատ խցիկով օվկիանոսի հատակի նկարահանումներ կատարեցին։ Լուսանկարի վրա կանոնավոր քարեշարվածքի նմանվող ինչ-որ բան է երևում։

Ի՞նչ է դա՝ հին ատլանտների շինությունների մնացորդնե՞ր, թե՞ մարդու գործունեության հետ ոչ մի կապ չունեցող պատահական բնական գոյացումներ։ Այդ հարցերին միայն ու միայն նոր հայտնագործությունները կարող են պատասխան տալ։

*Ա. ԴՄԻՏՐԻԵՎ*




## ԻՆՉԻ՞Ց ԵՆ ՎԱԽԵՆՈՒՄ ՇՆԱՁԿՆԵՐԸ

Բիոքիմիկոս Ժոզեֆ Բոնավենտուրան բնական օրգանական նյութերի վրա փորձեր կատարելով հայտնաբերեց, որ Կարմիր ծովում բնակվող տափակաձկների արտադրած պարադակսին կոչվող նյութը զարմանալի կերպով ազդում է ծովային գիշատիչների՝ շնաձկների ներվային համակարգի վրա: Եթե այդ նյութը տարրալուծեն այն ջրում, որտեղ գտնվում են շնաձկները, նրանք ուժեղ գրգռվում են, ապա գրգռվածությունը փոխվում է կաթվածի, և նրանք ոչնչանում են: Հնարավոր է, որ հեռու չէ այն ժամանակը, երբ ծովերի խորքերն ուսումնասիրողներն իրենց տրամադրության տակ կունենան շնաձկների դեմ պայքարի այդ միջոցը, որը շատ կօգնի ծովի հատակը կատարած իրենց սուզումների ժամանակ:

## ՈՒԶՈՒՄ ԵՔ ՀԱՎԱՏԱՑԵՔ, ՈՒԶՈՒՄ ԵՔ ՍՏՈՒԳԵՔ

Գետերը, լճերը, լեռները, նույնիսկ ճահիճները երբեմն ճամփորդում են:

1900 թվականի սկզբներին իռլանդական Կաստլեր քաղաքի բնակիչները ակնատես եղան անսովոր մի դեպքի. հսկայական ճահիճը մեկ օրվա ընթացքում մեկ կիլոմետր տարածությամբ տեղափոխվեց, իր ճանապարհին ավերելով մի ամբողջ ավան:

# ԶԳՈՒՇԱՑԵՔ

Հայաստանի չոր և տաք, ինչպես նաև անտառային ու լեռնային գոտիներում հանդիպում են թունավոր օձեր, որոնցից են ռադեյի իժը, եղջրավոր իժը և գյուրզան:

Առաջինը մոխրագույն կամ բաց գորշավուն է և մեջքի վրա ունի մուգ բծեր: Նրա խայթոցը հազվադեպ է մահացու:

Եղջրավոր իժերի դնչի ծայրին կան եղջյուրներ հիշեցնող ելուստներ: Նրանց խայթոցը շատ վտանգավոր է:

Իսկ գյուրզան մոխրագույն կամ գորշագույն է: Մեջքին ունի մուգ բծեր: Նրա խայթոցից մահանում է տուժածների 8 տոկոսը:

Թունավոր օձերը ունեն երկու կոր կամ ուղիղ հատուկ ատամներ, որոնք մնացած ատամներից ավելի խոշոր են և ունեն թունատար ուղիներ: Նրանց թունավոր գեղձերը զետեղված են վերին ծնոտի վրա: Այդ գեղձերի ծորանները բացվում են ատամների թունատար ուղիների մեջ: Օձի թունավոր ատամները սովորաբար քաշված են դեպի ներս, բայց խայթելու ժամանակ, երբ երախը ուժեղ բացվում է, վերին ծնոտի ոսկորները մի քիչ հեռանում են իրարից, և այդ ատամները ընդունում են ուղղահայաց դիրք: Ատամները երբ խրվում են զոհի հյուսվածքների մեջ, օձի քունքի մկանները կծկվում են և արտամղելով գեղձերում կուտակված թույնը, թունատար ուղիներով այն մտցնում են վերքի մեջ:

Գոյություն ունի այն սխալ կարծիքը, թե օձի երկճյուղ լեզուն ունի խայթելու ընդունակություն: Լեզուն միայն ճաշակելիքի զգայարան է և ոչ մի դեր չի խաղում թունավորման մեջ: Թունավոր օձերի խայթած տեղում առաջանում են երկու իրարից ոչ հեռու կարմիր, կետա-

# ՕՁԵՐԻՑ

նման վերքեր, իսկ ոչ-թունավորների համար բնորոշ են չորս կետերը:

Թունավոր օձերի խայթած տեղը շատ ցավոտ է լինում՝ արագ ուռչում և կարմրում է: Խախտվում է զոհի արյան մակարդունակությունը: 15—20 րոպե հետո առաջանում է ընդհանուր թուլություն, ընկնում են արյան ճնշումն ու մարմնի ջերմաստիճանը, որը հետագայում բարձրանում է մինչև 38—39 աստիճանի: Հնարավոր են սրտխառնոցներ, գլխապտույտներ, փսխումներ: Տեղնային դրությունը շարունակվում է 1—2 շաբաթ և բարեհաջող դեպքում սկսվում է ապաքինման շրջանը:

Առաջին օգնության նպատակով անհրաժեշտ է բերանով ինչքան կարելի է երկար և ուժեղ կերպով խայթված տեղից թույնը ծծել ու թքել, միևնույն ժամանակ վերքից վերև պետք է սեղմել կամ կապել, արգելելու համար թույնի տարածումը: Զնայած թույնի բերանով արտածծումը առանձնապես վտանգավոր չէ, բայց ծծողի բերանի լորձաթաղանթը պետք է առողջ լինի: Տուժածին հարկավոր է անհապաղ հասցնել բժշկական կետ, ուր սրսկում են հակաթունային շիճուկ:

Սակայն օձ տեսնելիս պետք չէ անմիջապես հարձակվել և ոչնչացնել: Օձերը նաև օգտակար գործ են կատարում՝ ոչնչացնում են վնասատու միջատներին ու կրծողներին: Իսկ նրանց այնքան անհավոր թույնը այժմ լայնորեն օգտագործվում է բժշկության մեջ: Ուստի ավելի լավ է զգուշանալ նրանցից, ոչ թե պատերազմ հայտարարել նրանց:

Հիշեցեք, որ երբ առիթ չի տրվում, նրանք չեն հարձակվում մարդու վրա:

*Վ. ԽԱԶՈՅԱՆ*

*բժիշկ, կենսաբանության թեկնածու*

## ԷՆԵՐԳԻԱՅԻ ԱՐՏԱՍՈՎՈՐ ԱՂԲՅՈՒՐԸ

Ճապոնացի պրոֆեսոր Ֆուձիո Տաչախասին արևի մարտկոց է պատրաստել, տափակ ապակիների արանքում սալաթի երկու տերև դնելով և տեղադրելով այն լաբորատորիայի պատուհանին: Այդ մարտկոցով աշխատել է տարանցիկ ընդունիչը: Լույսի էներգիան էլեկտրականի է փոխարկվել քլորոֆիլի օգնությամբ, ապա թույլ հոսանքները ուժեղացվել են էլեկտրոնային բարդ սարքերի միջոցով:

## ԻՆՉՊԵՍ ԲՈՒԺԵՑԻՆ ԿԵՏԵՐԻՆ

Սան-Դիեգոյում գտնվող Կալիֆորնիայի օվկիանաբանության կայանում երեք կետ հիվանդացան հոնգկոնգյան գրիպով:

Գիտնականները փորձեցին նրանց անտիբիոտիկներ սրսկել, դա նրանց ոչ մի կերպ չհաջողվեց: Չկարողացան նույնպես համոզել կետերին հաբեր ընդունել: Որոշեցին դեղերը լցնել սկումբրիա կոչվող ձկների մեջ, որոնց հանույքով ուտում էին այդ հսկաները:

Մի շաբաթ հետո երեք կետերն էլ առողջացան:



## ԾԱԳՈՒՄՆԱԲԱՆԱԿԱՆ

«Գազետա» բառը ծագել է իտալական ամենափոքր դրամական միավորի անունից: Իտալական առաջին լրագիրն արժեր 1 գազետա: Ժամանակի ընթացքում թե առաջին լրագիրը, թե նրա գինը այնքան հոլովվեցին, որ գազետա բառն աստիճանաբար վերածվեց լրագիր հասկացողության, մտավ լրագրության պատմության մեջ:

## ՀԱՆԳԱՎՈՐ ԼՐԱԳԻՐ

Հնդկական Չանդերնագորե քաղաքում լույս է տեսնում չափածո օրաթերթ: Այս անսովոր լրագրի հոդվածներն ու ինֆորմացիաները հանգավորված են:

## ԸՆԴԴԵՄ ԱՆՁՐԵՎԻ

Մի քանի տարի առաջ ֆրանսիացի ընթերցողներն ստացան մի անսովոր պարբերական: Լրագիրը դժվար է պատռվում և հաջողությամբ փոխարինում է անձրևանոցին: Այդ զարմանալի լրագիրը տպագրվում է պլաստմասսայի բարակ շերտի վրա:

## ԿՈՒՅՐԵՐԻ ԱՌԱՋԻՆ ԼՐԱԳԻՐԸ

19-րդ դարի 80-ական թվականներին կույր ժուռնալիստ Մորիս դը Լա Սիզրանը Փարիզում հրատարակում էր երկու լրագիր: Դրանցից առաջինը նախատեսված էր Ֆրանսիայի կույրերի ապաստանների ղեկավարության և մանկավարժների համար: Երկրորդը հրատարակվում էր ուռուցիկ նշանագրերով՝ կույրերի համար: Այս լրագրի առաջին բաժնում հրապարակվում էին օրվա նորությունները, իսկ երկրորդը նվիրված էր գրական, երաժշտական և գիտական աշխարհի նորություններին:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՐԶԱՅԱՆԻ

## ՄՈՒՐԱՑԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Անցած դարի վերջերին Փարիզում հրատարակվում էր իր նախատիպը չունեցող մի լրագիր՝ մուրացիկների համար: Թերթը հրապարակում էր քաղաքում հաջորդ օրը տեղի ունենալիք կնունքների, հարսանիքների և թաղումների ցուցակները: Երկրորդ բաժնում տեղեկություններ էին տպագրվում Փարիզ ժամանած բարեգործների և հարուստ ճանապարհորդների մասին:

## ԱՄԵՆԱՎԵՐՋԻՆ ՆՈՐՈՒՅԹԸ

Անցյալ՝ 1980 թվի փետրվարի 29-ին Ֆրանսիայի կրպակներում հայտնվեց «Բուժի դյու սայյոր» (Սակրավորի մոմ) թերթիկը: Այս լրագիրը նույնպես անսովոր է, որովհետև լույս է տեսնելու միայն փետրվարի 29-ին: Այսպիսով՝ լրագրի հաջորդ համարը ընթերցողին կհասնի հերթական նահանջ տարում:



## ՆՎԱԳԱԽՈՒՄԲԸ ՄԵԾ Է ԲԱՆԱԿԻՑ

Մոնակոն միակ երկիրն է աշխարհում, որի նվագախումբը գերազանցում է զինված ուժերին: Նվագախմբի կազմում հաշվվում է 85 երաժիշտ, իսկ բանակում՝ ընդամենը 82 մարդ:

## ԽՂՃԻ ՖՈՆԴԻՆ

ԱՄՆ-ի ֆինանսների մինիստրությունում գոյություն ունի այսպես կոչված «խղճի ֆոնդ», որը հիմնադրվել է դեռևս 1811 թվականին: Ֆոնդի նպատակն է՝ հնարավորություն տալ նրանց, ովքեր որևէ ձևով երբևիցե վնաս են հասցրել պետությանը, ուղղելու իրենց զանցանքն ու դրանով իսկ հանգստացնելու սեփական խիղճը:

Անանուն մի քաղաքացի վերջերս մուծեց 27 դոլար, քանի որ ճիշտ այդքան է թաքցրել պետությունից, երբ վճարում էր հարկերը: Մի տանտիրուհի 10 ցենտ է ուղարկել ֆոնդին, խոստովանելով, որ մի անգամ ծրարի վրայից պոկել է նամականիշ, որը պատահաբար մարված չէր և օգտագործել է ուրիշ ծրար ուղարկելու համար: Իսկ մի նախկին նավաստի մուծել է 1300 դոլար և խոստովանել, որ նավատորմում ծառայելու հինգ տարիներին ճիշտ այդքան գումարի իրեր է թռցրել...

Այո, ցուցակը երկար է, բայց մուծումները փոքր են: Սովորաբար 100 դոլարից ոչ ավելի: Հավանորեն տանջում է միայն փոքր մեղսագործների խիղճը: Խոշոր գումարներ հափշտակողներն այնքան էլ սենտիմենտալ չեն:

## ԱՄԵՆԱԿԱՐՃ ԱՆՈՒՆԸ

Սկանդինավիայում է գտնվում ամենակարճ անունն ունեցող գյուղը: Անունը բաղկացած է մեկ տառից: Խոսքն Å գյուղի մասին է, որը տեղադրված է Նորվեգիայում, Լոֆոտեն կղզիների խմբում: Գյուղում բնակվում են մոտ երեք հարյուր մարդ, որոնց մեծ մասը ձկնորս է:

## ԱՄԵՆԱՄԵԾ ՆԱՄԱԿԱՆԻՇԸ

Հասկանալի է, որ այս հսկա նամականիշը, որն ունի 11 սմ բարձրություն և 16 սմ լայնություն, կարող է հետաքրքրել միայն ֆիլատելիստներին, քանի որ սովորական փոստային ծրարից մեծ է:

Այդ նամականիշը թողարկվել է Խաղաղ օվկիանոսի Մարշալյան կոչվող կղզիներում և առայժմ աշխարհի ամենամեծ նամականիշն է:

## ՆԱԽ ԵՎ ԱՌԱՋ՝ ԳՈՐԾԸ

1980-ի վերջերին ամերիկյան Բեյքերսֆիլդ քաղաքում մեռավ մի քանդակագործ, որը բազմաթիվ շիրմաքարերի հեղինակ էր:

Իր վերջին ցանկության համաձայն նրա շիրմաքարի վրա անուն-ազգանունից բացի փորագրված էր նաև հետևյալը՝

«Ամենատարբեր տեսքի ու չափսերի շիրմակոթողներ կարող եք ձեռք բերել իմ այրու մոտից»:

Այնուհետև գալիս էին փողոցի անունն ու տան համարը, որտեղ ապրել էր ինքը:

*Հավաքեց՝*
*ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑԸ*



ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 9 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին էջը՝ Զավեն Սարգսյանի

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 17. 7. 1981 թ.։ Ստորագրված է տպագրության 2. 9. 1981 թ.։ ՎՖ 10928։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն։ 8,9 պայմ. մամ., 8,1 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 61160։ Պատ. 1788։ Գինը 15 կ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2։
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.




1883 թվականին լույս տեսավ արևելահայերենով տպագրված առաջին մանկապատանեկան ամսագիրը «Աղբյուր» անունով: «Աղբյուրի» էջերից Ղազարոս Աղայանը, Հովհաննես Թումանյանը, Հովճաննես Հովհաննիսյանը, Տիգրան Նազարյանը հայ մանուկներին սովորեցնում էին բարեկիրթ լինել, հայերեն ճիշտ խոսել, առաջադրում հանելուկներ, բառախաղեր, գիտելիքներ տալիս բնության երևույթների, բուսական ու կենդանական աշխարհի մասին:

Ներկայացնում ենք «Աղբյուրում» տպագրված ժամանցներից երեքը:

1. Վանդակներում եղած վանկերը ճիշտ դասավորելուց հետո, կկարդաք հայկական առածներից մեկը:

2. Տառերն այնպես դասավորել, որ չորս կողմից կարդացվի միևնույն բառը, իսկ մեջտեղում ընտացվի մի հրամայական բայ:

3. Ամեն մի շարքում եղած տառերը այնպես տեղափոխել, որ առանձին բառեր կարդացվեն:

1.




2.




3.



